# ՄԱՅԻՍ

Խոսք և երաժշտություն՝ Է. ՌԱՄԱԶՅԱՆԻ
(Պ. Ի. Չայկովսկու անվան դպրոցի աշակերտուհի)

Moderato

Առավոտ - յան ես արթ - նա - ցա:
Տես - նեմ շք - երթ է դր - սում, մայ - րի՛կ, մայ - րի՛կ տե՛ս փո - ղո - ցում ալ դրո - շակ - ներն են փող - փո - ղում.
մա - յիս - մեկ - յան տոնն է այ - սօր մեր ցն - ծու - թյան օրն է այ - սօր:
Մայրիկիս հետ փո - ղոց ե - լա դրոշ բռնած շք - երթ մտ - ա, շք - երթ մտ - ա:

Առավոտյան ես արթնացա,
Տեսնեմ՝ շքերթ է դրսում.
Մայրի՛կ, մայրի՛կ, տե՛ս, փողոցում
Ալ դրոշակներն են փողփողում:
Մայիսմեկյան տո՛նն է այսօր,
Մեր ցնծության օ՛րն է այսօր.
Մայրիկիս հետ փողոց ելա,
Դրոշ բռնած՝ շքերթ մտա:

Ջա՜ն, մայիսն է ուրախ ժպտում
Մանուկներին ազատ երկրում,
Դե՛, մանուկնե՛ր, մենք էլ եկեք
Մեր մայիսի գովքը երգենք:
— Ալ ես հագել, սիրուն մայի՛ս,
Գարնանային նախշուն ամիս,
Սպասում ենք ամեն տարի
Մենք քո գալուն, սիրուն մայի՛ս:




Կոմունիստական պարտիայի գործի պայքարին եղի՛ր պատրաստ

№ 5

ՄԱՅԻՍ

1955 թ. ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 27-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ՍԱՄԱԳԻՐ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԵՎ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

# ՄԱՐԴԿՈՒԹՅԱՆ ԳԱՐՈՒՆԸ

Նորից մայիս է, նորից խնդություն: Մեր անծայրածիր ու հզոր Հայրենիքի վրա բացվել է մայիսյան չքնաղ առավոտը: Ինչքա՜ն կապույտ է, ինչքա՜ն խորն ու անսահման երկինքը: Մարգագետնում ու գետի ափին ծաղիկներն են վառվռում արևի պայծառ շողերից, այգիներում ու անտառներում սաղարթն է շրշում, հավքն է ուրախ դայլայլում... Եվ քո պատանի սիրտը ցնծում է ուրախությունից ու թռչնի նման նախրում է դեպի դուրս, դեպի փողոց: Այնտեղ քեզ են սպասում քո ընկերները: Քանի՜, քանի անգամ դու շրջել ես այս փողոցով: Ամեն ծառ, ամեն տուն քեզ ծանոթ է: Սակայն այսօր շատ բան է փոխվել: Ալ դրոշներից շիկնել է փողոցը: Ի՜նչ գեղեցիկ է մայիսը: Այսպես գեղեցիկ է քո կյանքը: Եվ այդ հրաշալի կյանքը քեզ տվել է մեր հարազատ, մեր փառապանծ Կոմունիստական պարտիան:

Եվ դու քայլում ես հպարտ: Ոչ մի սև ուժ չի կարող կանգնեցնել քո հաղթական երթը: Քո ջահել ու հզոր երկրի նման դու քայլում ես դեպի կոմունիզմ: Քեզ հետ քայլում են խաղաղ ու ստեղծագործ աշխատանքի մարդիկ: Ահա նրանք, Դնեպրոպետրովսկի Լենինի անվան գործարանի պողպատ ձուլողները, Ռյազանի կոլտնտեսականները, Թարարիայի նավթագործները, Ռիգայի շինարարները, Մագնիտոգորսկի մետաղագործները, նոր Կախովկայի հիդրոկայանի կառուցողները, Կարագանդայի ածխարդյունաբերողները, Հայաստանի անասնապահները:

Այս առավոտ քեզ հետ քայլում են մեր ազնիվ բարեկամները: Նրանք երգում են ազատ ու անկաշկանդ: Այդ չինացին է երգում իր նոր ու ազատ կյանքի մասին: Գարնան հորդառատ հեղեղի նման փողոց են ելել հունգարն ու չեխը, լեհն ու ռումինը, բուլղարն ու ալբանացին: Նրանք իրենց երջանիկ կյանքն են փառաբանում: Այդ ինը հարյուր միլիոնանոց հզոր բանակի երթը ղեկավարում է քո փառապանծ երկիրը: Նա ցույց է տալիս երջանկության ճանապարհը:

Հեռավոր երկրներում, ուր կապիտալի ծանր լուծն է իշխում, այսօր բանվորներն աշխատանքի չեն գնում: Փարիզի, Լոնդոնի ու Նյու-Յորքի փողոցներում նրանք ցույցեր են կազմակերպում, բողոքում հարստահարողների դեմ: Նրանք պահանջում են հաց և խաղաղություն:

Նորից մայիս է, կարմրաշողալ մայիս... Եվ դու, պատանի բարեկա՛մ, քո ծնողների և ընկերների հետ քայլում ես տոնական շարասյուներով: Լայն է քո ճանապարհը: Քեզ նորանոր գործեր են սպասում: Քայլիր դու անվարան: Քեզ ողջունում է Կոմունիզմի պայծառ լուսարացը:

# ՓԱՌԱՎՈՐ ՀԱՂԹԱՆԱԿԻ ՏՈՆԸ





Գ. Կ. ԺՈՒԿՈՎ



Ի. Ս. ԿՈՆԵՎ



Ն. Գ. ԿՈՒԶՆԵՑՈՎ

...Լուսաբացին սկսվեց Սովետական զորքերի հարձակումը Բեռլինի վրա: Չորս օրից հետո նրանք շրջապատեցին քաղաքը և ռայխստագի կառավարական տան վրա կարմիր դրոշ բարձրացրին: Ամբողջ գերմանական բանակը անձնատուր եղավ: Պատերազմը վերջացավ հաղթանակով:

Այդ հաղթանակը բերեցին մեր փառապանծ զինված ուժերը, որոնց առաջնորդում էր Կոմունիստական պարտիան:

Սովետական Բանակում ղեկավար աշխատանք էին կատարում պարտիայի ու պետության ականավոր գործիչները, ընկերներ՝ Ստալինը, Խրուշչևը, Բուլգանինը, Վորոշիլովը, Կագանովիչը, Ժդանովը, Շչերբակովը: Բանակներին դեպի հաղթանակ էին տանում հմուտ զորավարները՝ Ժուկովը, Կոնևը, Վասիլևսկին, Ռոկոսովսկին, Բաղրամյանը և մյուսները:

Ամբողջ ժողովուրդը հպարտությամբ հետևում էր իր զավակների՝ Կոժեդուբի, Պոկրիշկինի և տասնյակ հազարավոր խիզախների մարտական գործերին: Նրանք և նրանց նման միլիոնավոր սովետական մարդիկ ռազմաճակատում և թիկունքում կոփեցին մեծ հաղթանակը: Սովետական Բանակի տարած հաղթանակի շնորհիվ մենք մարդկությունը փրկեցինք ֆաշիստական ստրկությունից:

Արևելյան Եվրոպայի ժողովուրդները ազատ շունչ քաշեցին: Նրանք իրենց երկրներում սկսեցին երջանիկ կյանք կառուցել...

Մեր ժողովուրդն այժմ վստահ է, որ աշխարհում չկա մի այնպիսի ուժ, որը կարողանա սասանել իր հզորությունը: Նա ոչ ոքի չի սպառնում և ամուր կանգնած է աշխարհի խաղաղության պաշտպանության դիրքերում:



Ա. Մ. ՎԱՍԻԼԵՎՍԿԻ



Ի. Խ. ԲԱՂՐԱՄՅԱՆ



Ի. ԿՈԺԵԴՈՒԲ



Ա. ՊՈԿՐԻՇԿԻՆ

# ՀԱՎԵՐԺ ՓԱՌՔ

*Ամենուրեք բորբոքվել էր սրբազան պատերազմը մեր ժողովրդին ստրկացնելու եկած ֆաշիստական զավթիչների դեմ։ Կոմունիստական պարտիայի կոչով ոտքի էր ելել ամբողջ երկիրը՝ պաշտպանելու իր ազատությունն ու անկախությունը։ Սովետական բանակները՝ ռազմաճակատներում, պարտիզանական գնդերը՝ թշնամու թիկունքում կատաղի կռիվ էին մղում հանուն խաղաղ կյանքի ու երջանկության, հանուն ստեղծագործ աշխատանքի ու լուսավոր ապագայի։*



Ա. ՄԱՏՐՈՍՈՎ



Հ. ԱՎԵՏԻՍՅԱՆ

*Եվ ո՞վ կարող է մոռանալ Հայրենիքի հարազատ դուստր կոմերիտուհի Զոյայի անունը, որը նույնիսկ կախաղանի մոտ սովետական մարդկանց կոչ արեց՝ «Կռվեցե՛ք, մի՛ վախեցեք»։ Ո՞վ կարող է մոռանալ Ալեքսանդր Մատրոսովին, որն իր կրծքով փակեց թշնամու հրակնատը և հաղթանակի ճանապարհ բացեց։ Ո՞վ կարող է մոռանալ Հունան Ավետիսյանին, որը կրկնեց ռուս եղբոր՝ Մատրոսովի սխրագործությունը։ Ո՞վ կարող է մի վայրկյան անգամ մոռանալ կապիտան Գաստելլոյի կրակե հարվածը, որ նա հասցրեց թշնամուն։ Ո՞վ կարող է մոռանալ 28 պանֆիլովականներին, որոնք մինչև վերջին կաթիլ արյունը կռվեցին թշնամու զրահապատ հորդաների դեմ։*



Զ. ԿՈՍՄՈԴԵՄՅԱՆՍԿԱՅԱ



Օ. ԿՈՇԵՎՈՅ

*Սովետական բոլոր մարդիկ, ամբողջ աշխարհի խաղաղասեր մարդկությունը սրբությամբ կպահպանեն կրկնակի հերոս, անվեհեր բազե Նելսոն Ստեփանյանի հիշատակը։ Բոլորը, բոլորը հավիտյան կհիշեն Օլեգ Կոշևոյի, Սերգեյ Տյուլենինի և «Երիտասարդ Գվարդիա» կազմակերպության բոլոր պանծալի հերոսների անունները։ Եվ այսպես, սերնդե սերունդ, ալեծածան դրոշների նման ձեռքից ձեռք կանցնեն Հայրենիքի ազատության համար ընկած հերոսների անբիծ անունները։ Սերնդե սերունդ կանցնի Լիզա Չայկինայի, Սաշա Չեկալինի, «Պարտիզանական կայծ» ընդհատակյա կազմակերպության մարտիկների անմոռաց անունները։*

*Չեն մոռացվի երբեք այն կրակոտ տարիները։ Դարերը կգան ու կգնան, ազատության վառ արշալույսը կճառագի շատ ուրիշ երկրների երկնակամարում. բայց չեն մոռացվի ռուս մեծ ժողովրդի և սովետական մյուս ժողովուրդների զավակների անունները, որոնք իրենց մահով ազատության և բերկրանքի ճանապարհ հարթեցին սերունդների համար։*



Ն. ՍՏԵՓԱՆՅԱՆԻ արձանը Երևանում

*Եվ քանի դեռ կա մարդկությունը, անմահ հերոսների անունները հիշելիս բոլորը խորին հուզմունքով կարտասանեն.*

*— Հավե՜րժ փառք Հայրենիքի ազատության ու անկախության համար զոհված հերոսներին...*

# ՀԱՂԹԱԿԱՆ ՄԱՅԻՍ

## 1945 ԹՎԻ ՄԱՅԻՍԻ 9-Ը

*Ն. ԶԱՐՅԱՆ*

Եկա՛ր, հաղթանակի՛ Մայիս, եկա՛ր...
Ես հավատում էի քո մեծ գալուն:
Սանձահարվեց մրրիկը խելագար,
Դու աշխարհին ավետելով գարուն՝
Եկար, հաղթանակի՛ Մայիս, եկա՛ր:

Ես հավատում էի քո մեծ գալուն:
Մինչև իսկ նահանջի մռայլ աշնան,
Երբ դրոշին գրած Հիտլեր անուն՝
Քայլում էր մահը դեպի մայր Մոսկվան,
Ես հավատում էի քո մեծ գալուն:

Սանձահարվեց մրրիկը խելագար,
Ինչպես վիշապ կիսվեց նա երկուսի,
Պոչով հարավ նետվեց, գլխով՝ հյուսիս,
Հույսով լուսավորվեց աշխարհն արար,
Սանձահարվեց մրրիկը խելագար:

Դեռ չէր բացվել այսքան այրող գարուն,
Այսքան և՛ վերք, և՛ վարդ, և՛ դրոշակ,
Այսքան կսկիծ, այսքան ուրախությո՛ւն...
Այս ծեր և միշտ մանուկ արևի տակ
Դեռ չէր բացվել այսքան այրող գարուն:

Եվ դու, հաղթանակի՛ Մայիս, եկա՛ր,
Ընկած հերոսների արյան ցոլքով,
Վերադարձողների հույսով պայծառ,
Մեր անքնությամբ, կռվով և այս երգով
Եկա՛ր:

# Մ Ա Յ Ի Ս

*Ռ. ՂԱՐԻԲՅԱՆ*

Զարթնել են, զուգվել այգի ու պարտեզ,
Գարունն աշխարհին նոր կյանք է բերել,
Ժպտում են բացված ծաղկունքը պես-պես,
Մայի՛ս, ամեն տեղ ծաղիկ ես փռել:

Փողոց է, ելել մանկիկը անհոգ,
Պապն է, թոռան հետ պուրակում խաղում,
Ցնծում է խինդից այսօր ամեն ոք,
Մայի՛ս, դու ինչքան լա՛վ ես ծիծաղում:

Ամեն տեղ կարմիր, կարմիր դրոշներ,
Անցնում են շարքեր ուրախ, ցնծալից,
Անհուն բերկրանքից շողում են դեմքեր,
Մայի՛ս, ի՛նչ ուրախ, ի՛նչ վառ ես գալիս:

Մայի՛ս, դու այդպես ծաղկիր անսահման,
Բացվիր, տարածվիր ամբողջ աշխարհում,
Որ ամենուրեք մեր երկրի նման
Միշտ լինի արև, միշտ լինի գարուն:



*Հաղթանակի դրոշի բարձրացումը ռայխստագի վրա*

# ԿԻԵՎԻ ԱԶԱՏԱԳՐՈՒՄԸ

*Ս. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ*
*(Սովետական Միության Հերոս, գեներալ-լեյտենանտ)*

*Նկ. Վ. ԿԱԺՈՅԱՆԻ*

Տասը տարի է անցել այն օրից, երբ որոտաց Հայրենական Մեծ պատերազմի վերջին համազարկը. 1945 թվականի մայիսի 9-ին Սովետական Բանակի հաղթանակով ավարտվեցին թշնամու զորքերի դեմ մղված հերոսական մարտերը: Գարնանային մի գեղեցիկ և անամպ խաղաղ առավոտ բացվեց հազարավոր կիլոմետրեր ձգվող ռազմաճակատում: Ծաղկավոր մայիսի հետ եկավ խաղաղությունը: Լռեց հազարավոր թնդանոթների որոտը, լռեց ծանր տանկերի շռինդը, ռազմական օդանավերի սպառնագին հռնդյունը: Խրամատների և կրակակետերի վրա տարածված ծխի ու կապտավուն երկնքում հնչեց ծիծեռնակների ճռվողյունը, կամուրջների ու ճանապարհների վրա լսվեցին շինարար մուրճերի հնչյունը, խաղաղ կառուցման բեռները տանող ավտոմեքենաների ու գնացքների ուրախ ճիչերը:

Ծաղիկներով զարդարված սիրուն մայիսն ամբողջ աշխարհին ավետեց խաղաղության բանակների հաղթանակը պատերազմը բորբոքող չար ուժերի դեմ: Բայց հեշտ ձեռք չբերվեց այդ հաղթանակը: Պատերազմի ընթացքում զոհվեցին միլիոնավոր մարդիկ, անթիվ-անհամար երեխաներ որբ մնացին, հազարավոր գյուղեր ու քաղաքներ ավերվեցին: Եվ որպեսզի չկրկնվի այդ սոսկալի ավերածությունը, խաղաղության հարյուր միլիոնավոր կողմնակիցների բանակները այժմ ոտքի են ելել պայքարելու հանուն խաղաղության ամբողջ աշխարհում:

Ստորև տպագրում ենք մի հատված Հայրենական պատերազմի հերոս զորավարներից մեկի՝ գեներալ-լեյտենանտ Սարգիս Մարտիրոսյանի հուշերից:

Կարդացեք և հիշեցեք, թե ինչպես ձեր հայրերն ու եղբայրները արյան ու կյանքի գնով մարտնչել են, որ դուք լինեք ազատ ու երջանիկ, ունենաք ամեն ինչ՝ լավ սովորելու և լավ ապրելու համար: Հիշեցեք և ձեր բոլոր ուժերը նվիրեցեք մեր մեծ Հայրենիքի խաղաղության ու բարգավաճման գործին:

*1943 թվականի նոյեմբեր ամսին N ռազմաճակատի զորքերը հաջող արշավանքով մոտենում էին Դնեպրին:*

*Լուսնյակ գիշեր էր: Մեր զորամասերը, պահպանելով քողարկման կանոնները, անտառների միջով շարժվում էին դեպի գետափ: Թշնամին պայթեցրել էր գետի վրայի բոլոր կամուրջները: Դրա համար էլ զորամասերն անցում պիտի կատարեին իրենց ունեցած միջոցներով:*

*Դնեպրի մերձափնյա անտառները հրետանային կրակից այրվել ու ճղակոտոր էին դարձել: Դարավոր կաղնիներն արմատախիլ տապալվել էին գետնին: Բացատներում, այստեղ ու այնտեղ ընկած էին հրետանային արկերի ու փամփուշտների հազարավոր լիքը և դատարկ արկղներ: Օդը հագեցած էր խանձահոտով: Հրետանային խուլ որոտից անտառն ասես տնքում էր ծանր վիրավորի պես:*

*Վաղ արշալույսին զորամասերի ստորաբաժանումները զանազան ուղղություններով մոտենալով գետափին, սկսեցին խրամատավորվել:*

*Անտառի փեշից պարզ երևում էին Դնեպրի արևմտյան բարձրադիր ափին դասավորված թշնամու դիրքերը:*

*Գիշերը մեր զորամասերը վերջացրին հարձակման նախապատրաստման աշխատանքները: Նրանք կազմ ու պատրաստ սպասում էին գետանցը սկսելու ազդանշանին:*

*Լույսը դեռ չէր բացվել, երբ գեներալ Մոսկալենկոյի միավորման զորամասերը հրետանային կրակի պաշտպանության տակ սկսեցին գետանցը:*

*Թշնամին գետի արևմտյան ափին հրավառություն էր սարքում և ջրի ամեն մի մետրը գնդակոծում: Լուսաբացին հրաձգությունն ավելի սաստկացավ: Բոլոր տեսակի զենքերի հրաձգությունը միախառնվեցին տասնյակ սավառնակներից թափվող ռումբերի դղրդը: Միավորման առաջավոր զորամասերը տասնյակ նավակներ ու լաստեր նստած մոտենում էին թշնամու ափին: Ավիացիոն ռումբերը և հրետանային արկերն ընկնում էին գետի մեջ և պայթելով հսկայական շատրվաններ բարձրացնում: Գետն ալեկոծվում էր. կատաղած ալիքները շուռ էին տալիս նավակներն ու լաստերը: Ոմանք զոհ գնացին գետի կատաղած ալիքներին, իսկ ոմանք էլ ընկան հերոսի մահով՝ հրետանու կրակից: Սակայն ոչ մի ուժ չէր կարող թուլացնել վրեժի ցասումով և հաղթանակի հավատով լցված մեր զորամասերի հարձակողական թափը: Նավակներն ու լաստերը արագ մոտենում էին արևմտյան ափին: Առաջավոր զորամասերի մարտիկները դուրս էին թռչում նրանց միջից և գրոհում հակառակորդի դիրքերը:*

*Թշնամին կյանքի ու մահվան կռիվ էր մղում: Նա կառչել էր ջրային այդ հզոր բնագծին: Հաճախակի հակագրոհներով նա ուզում էր խիզախների առաջին խմբերը գետը թափել: Սակայն ճանապարհ չկար դեպի ետ: Նորանոր խմբերի գետանցը շարունակվում էր, ճնշումը աստիճանաբար ուժեղանում: Վերջապես առաջավոր զորամասերին հաջողվեց ամրանալ գետի արևմտյան ափին:*

*Հրետանային կրակը չէր դադարում: Իմ ղեկավարած միավորման գլխավոր ուժերը շարունա-*

կում էին հաջող անցումը և ամրացնում էին իրենց դիրքերը Կիևի ուղղությամբ՝ վճռական հարձակում սկսելու համար։

Նոյեմբերի հինգի վաղ առավոտյան հրամանատարական դիտակետից, բոցերի ու ծխի միջից, երևում էր ուկրաինական գեղեցիկ մայրաքաղաքի ուրվագիծը։

Հետախուզությունը հայտնեց, որ թշնամին ականապատել է քաղաքի գործարանները, մեծ ու գեղեցիկ շենքերը։ Նա ուզում էր նահանջի դեպքում պայթեցնել դրանք։ Կիևը պետք էր ավերումից փրկել։

Մեր զորքերը հաջողությամբ զարգացնելով առաջխաղացումը, մոտենում էին քաղաքին։ Հյուսիսից քաղաքի վրա էին շարժվում գեներալ Ռիմանսկու զորամասերը, իսկ հյուսիս-արևմուտքից՝ իմ։ Մեզ աջակցում էին գեներալ Պանֆիլովի տանկերը։ Զորամասերը սկսել էին օղակել քաղաքը։ Մութը սև վարագույրի պես իջնում էր մարտադաշտի վրա։ Բայց կատաղի մարտերը մի վայրկյան իսկ չէին դադարում։ Գույնզգույն արկերը, լուսածիր գնդակները լուսատտիկների նման վխտում էին օդում։ Գետինը ցնցվում էր ռումբերի պայթյուններից և հարձակվող տանկերի դղրդյունից։

Ռազմաճակատի հրամանատարության դիտակետից հաճախ էին զանգահարում գեներալ Մոսկալենկոյին՝ մարտի ընթացքի մասին տեղեկություն ստանալու համար և պահանջում էին ուժեղացնել ճնշումը։ Քաղաքի ազատագրումը ամենաթանկագին նվերը պետք է լիներ մեր երկրին՝ Հոկտեմբերյան տոնի նախօրյակին։

Նոյեմբերի լույս վեցի գիշերն էր։ Մարտերը գնում էին Կիևի շուրջը գտնվող ամառանոցների փողոցներում։ Հակառակորդի զինվորներն այնքան էին շփոթվել ու խառնվել, որ տարբեր հարկերից կրակում էին միմյանց վրա։ Ճակատի «գիծը» հաճախ կազմում էր տախտակե մի պատ միայն։ Տներն այրվում էին։ Մարդիկ կրակում էին առանց ուշադրություն դարձնելու շուրջը բորբոքվող հրդեհին։ Երբ ուշքի էին գալիս, ուրվականների պես վազվզում էին հրդեհի հրացոլքի միջով։ Տեղ-տեղ ձեռնամարտեր էին գնում։ Թշնամին կատաղորեն դիմադրում էր։ Հարձակման ընթացքը դանդաղում էր։

Իմ ղեկավարած միավորումը շեշտակի գրոհի անցավ հյուսիս-արևմուտքից և ուզում էր կտրել հակառակորդի նահանջի ճանապարհը դեպի արևմուտք և հարավ-արևմուտք։ Թշնամին հասկանալով մեր զորամասերի մտադրությունը, զգալի չափով թուլացրեց իր դիմադրությունն այդ հատվածում և սկսեց նահանջել դեպի հարավ-արևմուտք։ Մեր զորամասերը ներխուժեցին քաղաք։

Կիևն այրվում էր։ Բոցերի լույսի ներքո փողոցային մարտեր էին գնում։ Տներից դուրս էին վազում կանայք, երեխաներ՝ նիհար ուրվականների պես։ Նրանք լաց էին լինում ուրախությունից, ծիծաղում էին արցունքների միջից։ Գիշերվա ժամը երկուսին մեր զորամասերն արդեն մարտ էին մղում քաղաքի կենտրոնում։ Անհրաժեշտ էր մինչև լուսաբացը քաղաքը մաքրել հիտլերականներից։ Չնայած գիշեր ու ցերեկ տևող կռիվներին, մարտիկների ոգևորությունն այնքան բարձր էր, որ մոռացել էին քաղցն ու հոգնածությունը։ Առանց



...մոտենում էին թշնամու ափին։

հաշվի առնելու թշնամու կատաղի դիմադրությունը, նրանք անընդհատ առաջ էին շարժվում ոչնչացնելով թշնամու կենդանի ուժն ու տեխնիկան։ Առավոտյան ժամը հինգին քաղաքն ամբողջովին մաքրված էր հիտլերականներից։ Թշնամին փախչում էր դեպի հարավ-արևմուտք։

Հրճվում էր ազատագրված Կիևի աշխատավորությունը, հրճվում էին սովետական երկրի բոլոր ժողովուրդները։

Սովետական Ուկրաինայի մայրաքաղաք Կիևի վրա նորից սկսեց ծածանվել հաղթանակի ալ դրոշը։

# ՎՈԼՈԴՅԱ ՈՒԼՅԱՆՈՎ*

(Հիշողություններ Վ. Ի. Լենինի մանկական և պատանեկան տարիների մասին)

Ն. ՎԵՐԵՏԵՆՆԻԿՈՎ

Նկ. Ա. ԴԱՎԻԴՈՎԱՅԻ

## ՆԱՎԱԿԸ

*Մենք այնքան էինք ընտելացել գետին, որ ինչ զբաղմունք ասես հնարում էինք։ Եվ դա զարմանալի չէ. մենք ուզում էինք լրիվ օգտվել այն ամենից, ինչ կարող էր տալ գետը։ Տասնհինգ հոգով ջուրն էինք իջեցնում հնացած մեծ նավակը։ Նավակն արդեն փտած էր և ջուր էր ծծում ու երեքչորս հոգու հազիվ էր տանում։ Այդ դեպքում էլ անհրաժեշտ էր լինում անընդհատ շերեփներով դուրս թափել ջուրը։*

*Մենք վերակառուցեցինք նավակը։ Ինքներս շինեցինք լիսեռը, որի ծայրերին թիակներ կային, իսկ մեջտեղը՝ բռնակներ։ Լիսեռն հարմարեցրինք նավակի լայնքով և սկսեցինք նավարկել։ Մեկը ուղղություն էր տալիս, մյուսը՝ պտտում լիսեռը, իսկ երրորդը՝ ջուրը դուրս թափում։ Բայց դա դեռևս մեզ չէր բավարարում։ Մի հոգին դժվարանում էր պտտեցնել լիսեռը. բացի այդ, ուզում էինք նավարկել բոլորս՝ վեց հոգով։ Իհարկե, լավ գիտեինք, որ նավակը մեզ բոլորիս պահել չի կարող և կխորտակվի։*

*— Հետո ի՞նչ։ Այդպես ավելի լա՛վ է, ավելի հետաքրքի՛ր։ Տեսնենք, թե մենք ինչպե՞ս կկարողանանք փրկել մեզ,— բացականչեց Վոլոդյան։*

*Հագնելով այնպիսի բլուզ ու շալվար, որոնք ջուր և օճառ շատ էին տեսել, բոլորս թռանք մեր «շոգենավի» վրա, կամ ինչպես Վոլոդյան էր ասում, «ձեռքանավի» վրա։*

*Կոշիկներս հանեցինք և դրեցինք նավացուկի վրա, որպեսզի չթրջվեին և նավաբեկման դեպքում հնարավոր լիներ ազատել դրանք ու ձեռքերի վրա ափ հասցնել։*

*Վոլոդյան իր կոշիկները հանեց և թողեց լոգարանում։ Նա առաջարկեց, որ մյուսներս էլ այդպես վարվենք։ Բայց այդ հեռատես խորհուրդը ոչ ոք չլսեց։*

*Ինչ որ ենթադրում էինք, այն էլ եղավ։ Ջնայած, որ երկու շերեփով ջուրն անընդհատ դուրս էինք թափում, շուտով նավակը լցվեց և սկսեց սուզվել։*

*Մենք նետվեցինք ոչ թե փրկվելու, այլ կոշիկները փրկելու։ Ազատում էինք ում որ լիներ. Վոլոդյան էլ ազատեց տղաներից մեկի կոշիկները։ Բայց մեզանից մեկը հազիվ ճանկեց աջ ոտքի կոշիկը. ձախինը՝ սուզվեց։*

*— Դե, հիմա գնա ու մի ոտի վրա թռչկոտիր,— ասաց Վոլոդյան։*

*Բոլորս փռթկացրինք։ Միայն խեղճ ձախորդը ծիծաղելու սիրտ չուներ։*

*Ընդհանուրի խորհրդով որոշեցինք փնտրել կոշիկը։*

*Առափնյա թփերի վրա փռեցինք շորերը, որ չորանան, իսկ մենք սկսեցինք սուզվել ջրի տակ։ Սկզբում սուզվում էինք մեկս մյուսի հետևից, իսկ հետո երկուսով միանգամից։ Բայց ապարդյուն. հատակից կամ տիղմ էինք հանում, կամ ծուռ կոճղեր։ Ոչ ոքի չհաջողվեց գտնել անբախտ կոշիկը։*

*Այս ու այն կողմից ասացին, որ վերջ տանք որոնումներին. կոշիկը կացին չէ, որ ուղիղ հատակն իջնի, բացի այդ, սուզվող նավակից ցատկելիս պղտորել էինք ջուրը։ Այնքան սուզվեցինք ու դուրս եկանք, որ ականջներս ջրով լցվեցին։*

*— Ոչի՛նչ, գլուխդ բարձին խփելով ջուրը դուրս կթափես,— ասաց Վոլոդյան,— հա կոշիկը ջրի տակ չենք թողնի։ Դուք ինչ ուզում եք արեք, իսկ ես կփնտրեմ։*

*Եվ պատասխանի չսպասելով, Վոլոդյան գլխիվայր թռավ ջուրը և շուտով դուրս եկավ, ջրի մեջ ինչ-որ բան բռնած։*

*Մենք կարծեցինք, թե դա էլի ծուռ կոճղ կլինի, բայց ոչ. դա կոշիկն էր։*

## «ՊՈՎԱՐՆՅԱ» ԱՂԲՅՈՒՐԻ ՄՈՏ

*Կոկուշկինո փոքրիկ գյուղում բոլոր երեխաները մեզանից կամ շատ մեծ էին, կամ բավականին փոքր։ Ընդհանրապես Վոլոդյան սիրում էր ընկերակցել մեծահասակներին, որոնք ավելի էին համապատասխանում նրա զարգացման մակար-*

---

* Սկիզբը «Պիոներ» № 4։



... նավակը ...սկսեց սուզվել:

դակին ու հետաքրքրություններին։ Ահա թե ինչու իմ նկարագրած միջադեպերում փոքրահասակ երեխաներ գրեթե հանդես չեն գալիս։

Իսկ այժմ ես կպատմեմ, թե ինչպես Վոլոդյան գնում էր լսելու թաթար տղա Բախավիի երգը։

Հիշում եմ, որ մի պայծառ արևոտ օր էր։ Դուրս թռչելով անկողնուց, ծառերի մեջ եղած ոլորապտույտ արահետով վազում ենք ներքև։ Վաղորդյան ցողի կաթիլներով զարդարված, անցնում ենք երերուն կամուրջի վրայով և գնում լողարան։ Նետվում ենք ջուրը, լող տալիս սաժենաչափ՝ աշխատելով, որքան հնարավոր է շատ դուրս ցցվել ջրից։ Պառկում ենք ջրի երեսին, գլուխկոնծի տալիս, սուզվում։ Լողանալուց հաճույք ստացած, կայտառ ու թարմացած գալիս ենք տուն։

Արևն ավելի ու ավելի վեր է բարձրանում։ Կոկուշկինո գյուղի փոքրիկ նախրապան Բախավին անասուններին տանում է ջրելու և հանգստացնելու։

Վոլոդյան սիրում էր լսել այդ ուրախ պատանու երգը։ Անցնում ենք ջրաղացի կողքի ամբարտակը և վազում դեպի մարգագետին։ Ապա անցնում ենք գետի մյուս ափը, որտեղ գտնվում էր «Պոլվարնայան» աղբյուրը։ Աղբյուրի առաջ հողաթմբով կտրել էին, որպեսզի ջուրը հավաքվի՝ անասունները ջրելու համար։ Տեսնելով Վոլոդյային, Բախավին ծոր էր տալիս թաթարական երգը։

Բախավիի երգի ընդհանուր բովանդակությունն այս էր. գյուղացի տղան հոտաղ է լինում, հետո բատրակություն է անում, իսկ դրանից հետո նրան «զինվոր են վերցնում»։

Այդ հնագույն երգից երևում է, որ այն հեռավոր ժամանակներում հասարակ մարդիկ ատում էին ցարական զինվորական ծառայությունը, նրա անհեթեթ ու խիստ վարժումների և մարդուն ծաղրուծանակի ենթարկելու համար։

Իմ հիշողության մեջ մինչև այսօր էլ մնացել է թաթարերեն այդ երգից մի քառյակ.

Սարի, սարի, սապ-սարի,
Սարի չեչեկ սապլարի,
Սագինիրսին, սարգիարսին,
Կիլսե սուգիշ չակլարի:

Թարգմանաբար նա նշանակում է.

Դեղին, դեղին, շատ դեղին,
Ծաղկի թերթերն են դեղին.
Կտխրես ու կդեղնես
Դու էլ կռվի օրերին:

Բախավին դեռ չէր վերջացրել երգը, երբ հայտնվեց նախրապան Անտոնը և դեռ հեռվից սկսեց կշտամբել նրան, որ նախիրը շատ վաղ է բերել արոտից։

— Բայց առանց ժամացույցի նա ինչպե՞ս իմանա ժամանակը,— պաշտպան կանգնեց Վոլոդյան։

— Կչափի չորս ոտք և կիմանա,— առարկեց Անտոնը։

Սակայն ոչ Վոլոդյան և ոչ էլ ես չենք հասկանում, թե ինչպես ոտքի թաթերը կարող են ժամացույցի փոխարինել։ Միայն Անտոնի և Բախավիի բացատրությունից ու ցույց տալուց հետո մենք հասկացանք, որ տարվա այդ ժամանակ, օրվա կեսին մարդու ստվերը լինում է չորս ոտնաչափ։

Վոլոդյան տեղն ու տեղը հիշեցրեց արևային ժամացույցի՝ առաջին աստղագիտական գործիքի մասին (դա ստվեր գցող ուղղահայաց փայտիկ է), որի օգնությամբ առաջին աստղաբաշխները, ինչպես նաև տավարածները որոշել են արևի բարձրության աստիճանը։

Վոլոդյայի պարզ և անբռնազբոսիկ պատմությունը հետաքրքրեց ոչ միայն ինձ և Բախավիին, այլև ծերունի Անտոնին, թեև այդ օրը նա ամեն

բանից դժգոհ էր։ Անտոնը գնացել էր Կոզիլի գյուղը, որ փող ստանար նախրապանության համար, բայց վերադարձել էր ձեռնունայն։

— «Ճիշտ է, պարտք եմ, կտամ, բայց ոչ շուտ» — փնթփնթում էր Անտոնը, —իսկ ես մախորկայի մի հատիկ էլ չունեմ. բլուղն էլ ուսերիցս է թափվում. իսկ գնելու փող չկա։

Վոլոդյան ուշադրությամբ լսեց թե՛ Բախավլիի երգը և թե՛ Անտոնի դառը խոսքերը։ Նրան ուրախացնում է արևը, որը պայծառ լուսավորում է. նրան չի վախեցնում նույնիսկ արևը ծածկող ծանր մրրկաբեր ամպը։

Վոլոդյան ներծծում էր իր մեջ ամեն ինչ, բոլորը, ինչպես հողը խոնավությունն է ներծծում։ Կյանքի լուսավոր ու մթին կողմերի նկատմամբ, Վոլոդյան աշխեցուցիչ կերպով զգայուն էր։

## ԶՐՈՒՅՑ ԿԱՐԴԱՑԱԾԻ ՄԱՍԻՆ

Բանից դուրս եկավ, որ Վոլոդյան ինձանից ավելի իրազեկ է գրականությանը, թեև փոքր հասակում, երբ ես ծանր հիվանդ էի, ինձ համար շատ էին կարդացել ռուս և արտասահմանյան հեղինակների ստեղծագործություններից։ Բացի այդ, ես էլ քիչ չէի կարդացել և ավելի լավ էի ծանոթ կլասիկ գրականությանը, քան ինձ հասակակից երեխաների մեծամասնությունը։

Վոլոդյան շատ էր սիրում հարցուփորձ անել կարդացածի մասին։

— Սա կարդացե՞լ ես։

— Ոչ։

— Իսկ սա՞։

— Ոչ։

Զանձրալի է անընդհատ պատասխանել՝ «ոչ» ու «ոչ». ասում եմ՝ «այո»։

— Տուրգենևի «Ծուխը» կարդացե՞լ ես։

— Այո...

Բայց Վոլոդյան հասկացավ, որ կեղծում եմ և այսպիսի խորամանկ հարց ավեց։

— Իսկ «Լիտվինով» վիպակը կարդացե՞լ ես։

Ես համեստորեն խուսափում եմ երկրորդ ստից և հաստատ ասում եմ՝

— Ոչ, չեմ կարդացել։

— Տեսար, որ փչեցիր, թե «Ծուխը» կարդացել ես։ Եթե կարդացած լինեիր, ապա կգիտենայիր, որ Լիտվինովը «Ծուխը» վեպի հերոսն է։ Տուրգենևը ոչ մի «Լիտվինով» վիպակ չի էլ գրել։

Մինչև այսօր էլ հիշում եմ, թե ինչպես էի շփոթվել։ Ամաչում էի ոչ այնքան նրանից, որ քիչ էի կարդացել, այլ, որ գլխավորն է՝ սուտ ասացի և Վոլոդյան այդպես ճարպկորեն ու արագ մերկացրեց ինձ։

Վոլոդյան հետագայում երբեք չհիշեցրեց ինձ և ոչ ոքի չպատմեց այդ խոսակցության մասին։

Այս դեպքը ցույց է տալիս ոչ միայն Վոլոդյայի հնարագիտությունն ու սրամտությունը, այլև բացահայտում է բնավորության շատ գնահատելի գծեր. ոչ թե ցուցամոլություն, այլ ճշմարտացի, ներգործող նրբանկատություն ու վարվեցողություն, հոգատար և ուշադիր վերաբերմունք դեպի մարդիկ։

Ուրիշ ո՞վ կարող էր զսպել իրեն, որպեսզի չծաղրեր, կամ լավագույն դեպքում, այսպես թե այնպես չհիշեցներ իմ խայտառակությունը։

Հետագայում Վոլոդյան ինձ ասաց, որ նա առանձնապես գնահատում է հաստատակամ ու աներեր բնավորություն ունեցող դրական տիպերին։

Նա իմ ուշադրությունը հրավիրեց Տուրգենևի «Ժամացույցը» պատմվածքի վրա, որն այն ժամանակ դեռևս անհայտ էր ինձ։ Կարդալով այդ պատմվածքը ես հասկացա, որ Վոլոդյային պետք է որ դուր գար պատմվածքի հերոս Դավիթը, հենց իր բնավորության շնորհիվ։

Կարծեմ հաջորդ ամռանը, երբ ես Վոլոդյային հարց տվի, թե արդյոք դրա համար չէ՞, որ նրան դուր է եկել այդ պատմվածքը, նա դրական պատասխան տվեց։ Նա ասաց, որ այնպիսի մարդիկ, ինչպիսին Դավիթն է, ինչին որ ձգտում են, նրան էլ հասնում են։

Վոլոդյան շատ խնամքով էր վարվում գրքերի հետ։ Ես երբեք նրա մոտ չեմ տեսել թերթերը ծալված կամ քրքրված գրքեր։

Լինելով անչափ աշխույժ, նա միաժամանակ զարմանք պատճառելու չափ օրինակելի ու կարգապահ տղա էր։ Ավելի ճիշտ, նա աչքի էր ընկնում իր ճշտապահությամբ, որը ես կանվանեի պահանջկոտություն դեպի մանրուքը (բայց ոչ թե այնպիսի բծախնդրություն, երբ ինչպես առածն է ասում, ծառերի հետևում անտառը չեն տեսնում)։

Քանի Վոլոդյան մեծանում էր, այդ գիծը դրսևորվում էր ավելի ու ավելի ընդգծված։

Հետագայում Մարիա Իլյինիչնան պատմում էր, որ երբ ինքը փոքր էր, իր հետ պարապում էր Վլադիմիր Իլյիչը։ Մի անգամ նա Վոլոդյային ցույց է տվել մի տետր, որն շտապելուց կարել էր սև թելով։ Վոլոդյան նկատել է, որ այդպես չի կարելի և, վերցնելով սպիտակ թելը, ինքն է նորից կարել տետրակը։ Հավանական է, դրանով նրա-



— Տեսար, որ փչեցիր...

տակ է ունեցել կրտսեր քրոջ մեջ ուշադիր վերաբերմունք դաստիարակել դեպի աշխատանքը և ուսումը։

## ՍԱՐՍԱՓԵԼԻ ՀԵՔԻԱԹԸ

Օգոստոսյան մի ամպամած ու մթին երեկո մենք հավաքվել էինք Ֆլիգելում, մեծ սենյակում։ Ոմանք խաղում են բիլիարդ, ուրիշները՝ թղթախաղ։

Ինչ-որ մեկը վերցրեց գիրքը և բարձրաձայն կարդաց Գոգոլի «Երեկոները Դիկանկայի մոտակա գյուղակում» պատմվածքը։ Բոլորը կամաց-կամաց թողեցին բիլիարդն ու թղթերը և նստեցին լսելու։ Լսում էինք հափշտակված։ Երբ «Կախարդված տեղը» վերջացրինք, սկսեցինք վիճաբանել, թե որը կարդալ, որ ավելի հետաքրքիր լինի՝ «Կորած գրությունը», թե «Վիյը»։ Որոշեցինք կարդալ «Վիյը», որպես առավել սարսափելի հեքիաթ։

Կոկուշկինոյում հյուրընկալվող գիմնազիստ Պետյա Ալեքսեևը երկյուղով նայում էր մութ լուսամուտներին և ավելի սեղմվում նավթալամպով լուսավորված սեղանին։

Պետյան մեր խմբի մեջ ամենամեծն էր, բայց ինչ-որ բանով տարբերվում էր բոլորից։ Հավանաբար, նա քիչ էր զարգացած և բավականաչափ էլ վախկոտ էր։

Նկատելով այդ գիծը, մենք սկսում ենք ձեռք առնել նրան, չնայած մեղանից մի քանիսն էլ իրենց լավ չէին զգում և մութ գիշերներին մեծ տանից մինչև Ֆլիգելը սարսափելով էին գնում։ Մենք չէինք ենթարկվում այդ զգացմանը. ձգտելով հաղթահարել ու թաքցնել այդ։

— Պետյան վատ է լսում և դրա համար էլ սեղմվում է դեպի սեղանը,— բացագանչում ենք մենք։

— Նայիր լուսամուտին,— ասում է Վոլոդյան,— նայիր և մթության մեջ դու կտեսնես մոմերով լուսավորված եկեղեցի, մեջտեղում դագաղ, դագաղի մոտ հոգևոր դպրոցի սան Խոմա Բրուտը... Նայիր, վախից ինչպե՜ս է սփրթնել նրա դեմքը... Ահա դագաղն սկսում է սլանալ օդի միջով. քիչ է մնում նրան կպչի։

Դժբախտ Պետյան շուռ է գալիս, փախչում լուսամուտի մոտից և մատներով փակում է ականջները։ Մենք ուժով նրա ձեռքերը հեռացնում ենք ականջներից և շշնջում սարսափելի հեքիաթի խոսքերը։

Տեսնելով, որ Պետյան շուտով լաց կլինի, Վոլոդյան միանգամից ընդհատում է անտեղի ու չարամիտ կատակները։

— Ո՛չ, չի՛ կարելի այդպես կատակել,— ասում է նա,— մենք իզուր դա հնարեցինք։ Պետք է վերջ տալ այս ծաղրուծանակին, այս խաղին։

Եվ դառնալով դեպի Պետյան, Վոլոդյան հանգստացնում է նրան։

— Է, ի՞նչ կարելի է տեսնել լուսավոր սենյակի լուսամուտից մութ գիշերվա սևությունից բացի։ Իսկ ծաղկանոցից, ընդհակառակը, դու կտեսնես լուսավոր մի սենյակ և սեղանի շուրջը նստածներիս։ Այստեղ սարսափելի ոչինչ չկա. բայց թողնենք դա։ Ավելի լավ է շաշկի խաղանք երկու տախտակի վրա։ Հաղթողներն էլ կմրցեն միմյանց հետ։ Դե, նստենք և սկսենք խաղը։

Պետյան մի քիչ հանգստացավ։ Երեկոն վերջանում է։ Քնելու ժամանակն է։

(Շարունակելի)

# ԿԱՐՄԻՐ ՎԶԿԱՊ

*Ա. ՊՈՂՈՍՅԱՆ*

Երկարգիծն է խոր ձորերով
Զգվում անվերջ դեպի վեր,
Գետն է հոսում՝ ոլորվելով
Ռելսերի հետ զուգահեռ:

Ու պոկվում է տեղից հանկարծ
Ժայռի բեկորն ահավոր,
Փշրվում է, թափվում է ցած
Քարի հեղեղն անսովոր:

Շվարել է փոքրիկ Արան
Ոլորանում ռելսերի.
Նա չէր տեսել այդպիսի բան.
«Ժայռը աղետ կբերի»...

Անցավ մտքով: Նայեց ուղուն
Ուր փովել է քարն այնպես...
Բայց վտանգից նա չի դողում,
Պիոներ է վերջապես:

Վզկապն առած, ինչպես ընկեր,
Ե՛վ հեւում է, և՛ վազում
Ոլորանից ոլորաններ:
Ու ճամփան է պակասում:

Ընկնում է նա, ելնում էլի,
Քրտինքն հոսում ու նեղում,
Երբ մի սուլոց սարսափելի
Մեխնեց նրան հենց տեղում:

Գնացքն ահա... Մոտ է արդեն.
Նա իր կողմն է սլանում:

Մահն է կարծես փնչում իր դեմ...
«Ա՜խ, մի՞թե չեն նկատում»...



Եվ խփում է սիրտը նրա,
Դողում վզկապը բոսոր...
Վագոններն են զարկվում իրար
Ցնցումներով անսովոր:

Մեքենավարն իջնում է ցած,
Գրկում փոքրիկ հերոսին...
Ու պատմում է տղան հուզված
Ռելսի, ժայռի, իր մասին:

Եվ ժպտում է ուրախ Արան,
Բռնած վզկապը ձեռին:
Պինդ թևերով գրկած նրան
Հանգիստ ասում է քեռին.

— Ապրես, տղա՛ս, քո վեհ սրտում
Քաջությունը միշտ կապրի.
Բարձր ես պահում պատիվը դու
Կարմիր, կարմիր վզկապի:

# ԾԱՂԻԿՆԵՐ

*Ն. ՄԻՔԱՅԵԼՅԱՆ*

Ձեզ ցանել եմ այս գարուն
Ծաղիկնե՛ր իմ կապուտակ,
Որ պարտեզում մեր սիրուն,
Բացվեք ուրախ ու ժպտաք:
Երազել եմ ձեզ սիրով
Ձմռան այն ցուրտ օրերին,

Հիմա չքնա՞ղ գույներով
Զարդարել եք ծառուղին:
Ձեր ցողաշաղ աչքերում
Ես ծիծաղն եմ տեսնում մեր,
Ձեզնով գարունն է ժպտում
Ծաղիկնե՛ր իմ, ծաղիկնե՛ր:

# ԹԱԼԱՆԸ

Ս. ԽԱՆԶԱԴՅԱՆ

Նկ. Վ. ԹԵՎԱՆՅԱՆԻ

## 1

Մեր գյուղը գտնվում էր ձորաբաշին։ Ներքևում խորունկ կիրճն էր։ Մենք քար էինք գլորում ցած և մինչև նրա ձայնը ձորի խորքից մեզ հասներ, երեք, չորս անգամ գլուխկոնձի էինք տալիս ժայռապռունկի հարթության վրա։ Գյուղի տները իրար վրա էին և այնքան քիչ տեղ էին բռնում, որ երբ գյուղի վրա ճախրում էր արծիվը, նրա ստվերը ծածկում էր գյուղի ամենահարուստ մարդու՝ Դաղոնց Ռաքելի մեծ տունը։

Իրիկնամուտին ես ու մեր հարևանի տղան՝ Խաչոն, նստում էինք ձորաբաշին փռած Դաղոնց աթարին ու ոտքերս անդունդի վրա կախած զրուցում։ Զրուցում էինք ու նայում ներքևում ճախրող արծիվներին, որոնք սև կետերի նման փոքր էին երևում։ Ես ինձանից երկու տարով մեծ ընկերոջս հարցնում էի.

— Խաչո՛, որ ես նստեմ արծվի թևերին, կարո՞ղ է ինձ թռցնել։

— Կարող է,— խսկույն պատասխանում էր Խաչոն.— արծիվը մի ջրաղացաքար էլ կարող է մեջքին թռցնել։ Նրա թևերը կամի չափ են։

— Բա ինչո՞ւ է այստեղից փոքր երևում,— հետաքրքրվում էի ես։

— Հեռու է. արևն էլ հեռու է, դրա համար էլ փոքր է երևում։

Ամռան սկզբներին ես ու Խաչոն արտերի եզերքներից մանգաղով խոտ էինք հարում, շալակով բերում գյուղ՝ ձմեռը Խաչոյենց միակ այծին կերակրելու։ Հնձի օրերին հասկ էինք հավաքում։ Աշնանն էլ անտառապահից վախվխելով գնում էինք անտառ, ձմեռվա համար ցախ հավաքում ու երբ մութն ընկնում էր, ծածուկ բերում էինք գյուղ։

Հաճախ Խաչոն սոսկալի բաներ էր պատմում մեր ձորերում ապրող արջերի, լիսեմնի ու բորենու մասին և երբեմն ինձ թվում էր, թե կիրճի խորքում տեսնում եմ բորենու շերտավոր մեջքը կամ լիսեմնի բաց երախը։ Շատ պատմություններ ու հեքիաթներ գիտեր Խաչոն։ Նա կապույտ, խելացի աչքեր ուներ և շեկ մազեր, որոնք իջնում էին նրա ականջներին, թափվում ճակատին։ Երեկոները տների կտուրներից ծխի սյուներ էին բարձրանում, որոնք օձերի նման կեռմաններ էին անում ու գնում, թանձրացնում երկնքի կապույտը։ Մեր ու Խաչոյենց տներից ծուխ բարձրանում էր միայն այն ժամանակ, երբ իմ մայրը փիփերթ էր եփում կամ Խաչոյի մայրը այծի կաթ տաքացնում։

Մայրամուտից առաջ խաղաղ գյուղի վրա հանկարծ հնչում էր շան դղրդուն հաչոցը։ Հավերը թևերը թափահարելով ցրվում էին. փողոցներում խաղացող երեխաները վազում էին իրենց տները. նույնիսկ մեծերը զգուշանում էին։

— Թալանն է հաչում. Դաղոնց Ռաքելը քաղից եկավ, վեր կաց,— տագնապով ասում էր Խաչոն ու արագ վեր կենում ձորապռնկից։

Սուր ու կեռ բեղեր ունեցող Ռաքելը չէր սիրում, երբ մենք նստում էինք ձորապռնկին գցած իր աթարի վրա։

— Աղա՛, սոված շնե՛ր,— գոռում էր նա,— աթարի վրա մի՛ նստեք, փեյինը փչանում է։ Կոռե՛ք, թե չէ ականջներդ կկտրեմ, հա՞...

Ես կիրճի խորքում ապրող բորենուց ու լիսեմնից այնքան չէի վախենում, որքան Ռաքելից ու նրա շնից՝ Թալանից։

Թալա՞նը... Հիմա էլ նրան մտաբերելիս մի տեսակ ահ է ընկնում սիրտս։ Այն ժամանակ մեր գյուղում ամենաբախտավոր արարածները շատ այգիներ ու արտեր ունեցող Ռաքելն էր ու նրա շունը՝ Թալանը։ Թալանը մի հսկայական սև գամփռ էր՝ կրակով լի աչքերով ու երկար դնչով։ Նրա պոչն ու ականջները կտրված էին, որ ավելի չար ու կատաղի լինի, լավ լսողություն ունենա։ Եթե Ռաքելն ու Թալանը գյուղում էին, ոչ ոք չէր կարող անտառից մի չոփ բերել, մի մասուր պոկել կամ մի խուրձ խոտ հարել հորթի համար։ Բա Թալանն ու Ռաքելը մեռա՞ծ էին։

Գրեթե ամեն երեկո Ռաքելը մեր գյուղի փոքրիկ հրապարակում մարդ էր ծեծում։ Ծեծում էր այնքան, մինչև որ հոգնում էր. հետո կանչում էր իր շանը։

— Թալա՛ն, գզիր...

Վա՜յ նրան, ով ընկնում էր Թալանի ճանկը։ Լավ շահած-պահած շունը տիրոջ հրամանով քամու պես փաթաթվում էր թշվառին ու գզում...

— Էսպես որ գնա, Ռաքելն ու Թալանը մեր գյուղի տունը կքանդեն,— շշուկով ասում էին մարդիկ։

Թալանը գյուղում ինքնիշխան էր։ Մեկի հավն էր խեղդում, մյուսի ուլը քըքրում, երրորդի կովի կուրծը պատռում։ Ո՞վ կարող էր խոսել Ռաքելի առաջ, ո՞ւմ գանգատ գնար։

— Թալանիս քեֆին կպչողին աքսորական

կանեմ,— ասում էր Ռաքելը՝ ձեռքի մեկը խրելով լայն, արծաթապատ գոտու արանքը, մյուսով սրբելով բեղը։— Մի գյուղ է, մի ես ու իմ Թալանը. պրծավ գնաց։

Գյուղից դուրս գալիս Ռաքելը Թալանին միշտ հետը տանում էր։ Խանչալը կապում էր, հրացանն ուսը գցում, նստում սպիտակ ձին ու գնում իր բանին։ Նրա հետևից գնում էր սև Թալանը։ Երեկոները, երբ Ռաքելը տուն էր գալիս, դեռ բակից կանչում էր կնոջը.

— Աղջի՛, Դեկանց Թեռ, հացի հոգս արա, եկանք։

Հետո իջնում էր ձիուց, սանձը տալիս ծառային, իսկ ինքը դանդաղ բարձրանում երկհարկանի տան քարե աստիճաններով։ Լվացվում էր ու նստում պատշգամբում փռած գորգի վրա։ Կինը սուփրան փռում էր նրա առաջ։



Լաց չէր լինում միայն Խաչոն...

— Առաջ Թալանին հաց տուր, հետո ինձ,— միշտ պատվիրում էր Ռաքելը։

Նրա մոտ գորգի վրա մեկնված Թալանը գոհունակությունից երախը բաց էր անում ու հորանջում։ Հորանջում էր նաև բարձերին թեք-ընկած Ռաքելը։

Սովորաբար այդ պահերին ես ու Խաչոն բարձրանում էինք մեր ու Ռաքելի տան միջև գտնվող բարձր պատն ու թաքուն նայում Ռաքելին ու նրա շանը։ Հաց էին բերում։ Ռաքելը ոչխարի մսից մի խոշոր պատառ գցում էր Թալանի առաջ ու շոյում նրա մեջքը։ Շունը միսը դնում էր առջևի ոտքերի արանքում և ուտում գրմռալով։

— Կե՛ր, Թալան ջան, հալալ է քեզ,— ասում էր Ռաքելն ու ինքն էլ ուտում ոչ պակաս ախորժակով։

Տերն ու շունը լափում էին համեղ ուտելիքները, իսկ ես ու Խաչոն վզներս ծռած նայում էինք նրանց, ու մեր բերանի ջուրը գնում էր...

— Ես պիտի լինեի Թալանի տեղը,— երբեմն ասում էի ընկերոջս։

— Սո՛ւս, ամոթ է,— սաստում էր Խաչոն։

Երբ Ռաքելն ու Թալանը կշտանում էին, շունը կանգնում էր ու իր գազանային հայացքը գյուղի վրա ման ածելով՝ հաչում։ Իսկ կուշտ ու կուռ կերած Ռաքելը թիկնում էր գորգի վրա դրած բարձին ու նայում, թե ինչպես է կինը հանում իր ոտքերն ու լվանում տաք ջրով։

Այսպես կրկնվում էր ամեն օր։

2

Մի օր էլ Խաչոյենց տանը մեծ դժբախտություն եղավ։ Թալանը բռնել էր Խաչոյենց միակ այծին ու փորը պատռել։ Այծն իսկույն սատկել էր։ Խաչոյի մայրն ամբողջ օրը լաց եղավ. լաց եղանք նաև ես ու իմ մայրը։ Լաց չէր լինում միայն Խաչոն, և դա ինձ զարմացնում էր։ Ախր նրանց այծը երկու աղքատներիս միակ հույսն էր։

Երեկոյան Խաչոյի մայրը գնաց Ռաքելենց տուն։

— Ոտքդ պաչեմ, Ռաքե՛լ, շունդ էծիս սպանել է, որբի բաժին էր, կյանքդ երկար լինի, վնասը տուր։

— Ի՞նչ տամ, քավթա՛ռ, մի էծ էր, հո մի գոմեշ չէր. մի էծի համար ի՞նչ ես ղահլես տանում,— որոտաց Ռաքելը,— ձեր էծը լավ պահեիք, որ չմտներ մեր բակը, չընկներ մեր շան ռեխը։

Խաչոյի մայրը ելավ աղի արցունք թափելով։

— Թիկունքդ հողի՛ն տաս, Ռաքե՜լ...— կամացուկ անիծում էր նա,— քե՛զ էլ, քո շանն էլ մի տեղ թաղեմ, հա՜...

Անցավ մի քանի օր։ Խաչոն մռայլվել էր, դարձել սակավախոս ու մտածկոտ։ Թեև մենք առաջվա նման գնում էինք ցախի կամ նստում

քարափին, բայց նա քիչ էր խոսում և չէր պատմում արջերի, բորենու ու լուսանի մասին։

Մի օր էլ նա ինձ ասաց.

— Ես Թալանին կսպանեմ։

— Ո՞նց,— զարմացած ու վախեցած հարցրի ես։

— Կսպանեմ,— կրկնեց Խաչոն։

— Ասեղ տա՞նք։

— Չէ, Թալանը ուրիշի տված հացը չի ուտում։ Ուրիշ ձևով կսպանեմ Թալանին, սպասիր։

Մյուս օրը Խաչոն ինձ տարավ գյուղի ծայրը։ Ճանապարհի եզերքին մի վայրի թզենի էր բուսած՝ լայն ու մեծ տերևներով։ Այդ թզենու տակ, հին փտած կոճղի մեջ շնաձանձի բույն կար, որի վրա պտտվում էին շնաձանձերն ու բզզում...

— Տեսնո՞ւմ ես,— հարցրեց Խաչոն՝ կոճղը ցույց տալով,— սրանով կսպանեմ Թալանին։

Խաչոն ինձ տարավ ձորը։ Այնտեղ այնքան կաչաղակ էր լինում, որ առավոտից մինչև երեկո նրանց չրթչրթոցը մարդու գլուխ էր տանում։ Պարսատիկներով սկսեցինք քարեր նետել կաչաղակների վրա։ Ամբողջ օրը քար գցեցինք, բայց ապարդյուն. հոգնած ու փչրված սրտով վերադարձանք տուն։ Այսպես երեք օր պարսատիկներով քարեր էինք գցում կաչաղակների վրա։ Երրորդ օրվա կեսօրին վերջապես մեր բախտը բանեց։ Խաչոյի նետած քարից մի կաչաղակ ընկավ։ Մոտ վազեցինք։ Կաչաղակի թևը ջարդվել էր ու թպրտում էր խոտերի մեջ։ Խաչոն վերցրեց նրան ու մենք վերադարձանք գյուղ։ Կաչաղակն արնաքամ էր լինում, բայց շարունակում էր թափահարել առողջ թևը։

— Միայն թե մինչև իրիկուն չսատկի,— ասում էր Խաչոն՝ կապելով կաչաղակի թևը, ջուր տալով նրան։

Իրիկնամուտին մենք գնացինք ճամփեզրյա թզենու մոտ ու մտնելով նրա խիտ ճյուղերի արանքը՝ թաքնվեցինք։ Խաչոն թել էր կապել կաչաղակի ոտքից ու սպասում էր Դաղունց Ռաքելի երևալուն։

Վերջապես ճանապարհի ծայրին երևաց Ռաքելը՝ գիք նստած իր սպիտակ ձիու վրա, փափախը ծոծրակին, ձեռքը խանչալի կոթին դրած։ Նրա առջևից գալիս էր Թալանը։ Շունը հոտոտում էր գետինը, «հաֆ» անում ճանճերին, երբեմն էլ հաչում հեռու անցորդների վրա։ Թալանը մոտեցավ մեր թզենուն։ Խաչոն կիսակենդան կաչաղակը կախեց ուղիղ շնաձանձի բնի վրա։ Կաչաղակը ընկավ բնին ու սկսեց թպրտալ։ Այդ տեսնելով Թալանը կայծակի արագությամբ թռավ կաչաղակի վրա ու չորս ոտքով խրվեց շնաձանձի բնի մեջ։

— Փախի՛ր,— ականջիս շշնջաց Խաչոն ու ինձ քարշ տվեց։

Մենք գլորվեցինք թզենու մյուս կողմը գտնվող ցամաք առվի մեջ ու կուզեկուզ վազեցինք դեպի այգու խորքը։ Մեր հետևից լսվեց շան աղեկտուր կլանչոցը։ Ես սարսռացի այդ ձայնից ու ավելի պինդ բռնեցի Խաչոյի ձեռքը։ Բարձրացանք մի ընկուզենի ու թաքնելով ճյուղերին՝ նայեցինք թզենու կողմը։

Հազարավոր շնաձանձեր դուրս էին թափվել բնից ու ամպի նման փաթաթվել Թալանին։ Գազազած շունը ոռնում էր, կլանչում, խելագարի պես թափահարում գլուխը, թավալ տալիս, բայց ինչ էլ որ անում էր, չէր կարողանում պրծնել շնաձանձերի անխնա խայթոցներից։ Տեսնելով, որ շունն աղետի է ենթարկվել, Ռաքելը խթանեց ձին ու հասավ թզենու տակ։


Ձին կատաղորեն ծառս եղավ...

— Վա՜յ, տունս քանդվեց, Թալա՛ն, Թալա՜ն...— գոռաց նա, բայց նրա ձայնը խղվեց։

Շան գլխին օրորվող շնաձանձերից պոկվեց մի մեծ պարս ու փաթաթվեց Ռաքելին...

Ձին կատաղորեն ծառս եղավ ու սլացավ հողմի նման։

— Հարա՜յ, սպանեցի՜ն, հարա՜յ, օգնեցե՜ք,— գոռում էր Ռաքելը։

Մենք նայում էինք փոշու մեջ թավալվող, ոռնացող Թալանին ու խելագարի նման գոռացող Ռաքելին և գրկում իրար, համբուրվում, քրքջում...

— Դե կերե՛ք, սրիկանե՛ր,— քրքջոցի միջից ասում էր Խաչոն։

Ռաքելն ընկավ ձիուց ու ձեռքով գլխին, ծոծրակին խփելով մի կերպ իրեն գցեց աղբյուրի կամարների տակ, շորերով պառկեց քարե գուռի կեղտոտ ջրի մեջ, որտեղ կանայք լվացք էին անում ու հորթերին ջուր տալիս։ Շնաճանճերից հալածված նրա ձին վազվզեց, վազվզեց և ժայռից ընկնելով գլորվեց ձորը...

Իսկ Թալա՞նը։ Շնաճանճերի խմբերով փաթաթված Թալանը ոռնալով ու կոնձկոնձալով փախավ դեպի անտառ...

Երեք օր հետո ես ու Խաչոն նրան սատկած տեսանք անտառի եզրին։ Առաջին անգամ ես չվախեցա Դաղունց Թալանից. մոտեցա, ոտքս դրի նրա գլխին ու Խաչոյի հետ սկսեցի քրքջալ։

# ՀԱՆԴԻՊՈՒՄ ԲԱՆԱՍՏԵՂԾԻ ՀԵՏ

Լ. ՎԱԳՆԵՐ

Նկ. Ռ. ԱՎԵՏԻՍՅԱՆԻ

Սեպտեմբերին Պետերբուրգում անձրևներ էին գալիս։ Մարդիկ բոլորովին մոռացել էին, որ երկինքն այստեղ էլ կապույտ է լինում, որ հենց քիչ առաջ լայնարձակ փողոցների և հրապարակների վրա փայլում էր արևը։ Հատկապես դժվար է նրա համար, ով եկել է այստեղ հարավից։ Նա երբեք չի կարողանում ընտելանալ այդ գորշ, անուրախ արշալույսներին։ Երեք տարի էր անցել, որ Այվազովսկին եկել էր Պետերբուրգ՝ Գեղարվեստների ակադեմիան։ Պատանին սիրում էր այդ անծանոթ, հեքիաթային քաղաքը։ Նա կարող էր ամբողջ գիշերներ թափառել նրա քնած փողոցներում և երազել... Իսկ ինչի՞ մասին չեն մտածում տասնյոթ տարեկան պատանիները...

Նա հույս ուներ գոնե մի անգամ տեսնել բանաստեղծին, որն ապրում էր Պետերբուրգում։ Դեռ մանկության օրերին Այվազովսկուն պատմել էին, որ Պուշկինը եղել է նրա հարազատ քաղաքում՝ Թեոդոսիայում։

Թեոդոսիայի հիշողությունները սեղմում էին պատանի նկարչի կուրծքը։ Նա նայում էր ցածր, արճճե ամպերին և հիշում էր արևով լցված ծովափնյա փոքրիկ քաղաքը, բարձր, կապույտ երկինքը։

Այսօր Այվազովսկին վաղ արթնացավ ինչ-որ աղմուկից։ Նա վեր թռավ անկողնուց և վազեց դեպի լուսամուտը։ Բարձր ապակիների հետևը կաթկթում էր անձրևը, գորշագույն շղարշը ծածկում էր առաջին անցորդներին։ Նա սկսեց թախծել և դողալ, թեև սենյակում տաք էր։

Այվազովսկին նորից պառկեց և շուտով քնեց։ Նա մի զարմանալի երազ տեսավ. կարծես նրանց տանը տոն էր։ Մայրը չէր գնացել ուրիշների սպիտակեղենը լվանալու, այլ մաքրում էր տան հատակը։ Փոքրիկ Հովհաննեսը սիրում է, երբ բուրում է նոր լվացած հատակը։ Հետո սենյակ մտավ հայրը, ձեռքին հենց նոր քաղած վարդեր և դրեց ծաղկամանի մեջ, որը նրանց աղքատիկ տան միակ զարդն էր։

Հովհաննեսը դեռ այդպես երկար կպառկեր իր փոքրիկ անկողնում՝ հրճվելով տոնական հանդիսավորությամբ և լռությամբ։ Բայց հանկարծ ինչ-որ տեղից երևացին նրա ընկերները։ Նրանք աղմուկով խուժեցին սենյակ և սկսեցին քաշքշել նրան։ Ամեն մեկը մի նվեր էր բերել։ Միայն այժմ



...ապակիների ետևում կարկըում էր անձրևը...

է Հովհաննեսը գլխի ընկել, որ այսօր նրա ծննդյան օրն է, որ երեկ քնելուց առաջ մայրը նրան նոր երկնագույն շապիկ էր կարում։ Հովհաննեսը մի ակնթարթում վեր է ցատկում, բռնում ընկերների ձեռքը և սկսում նրանց հետ պտտվել սենյակում։ Հայրն ու մայրը մյուս սենյակում կանգնած դիտում են երեխաներին, ժպտում և թաքուն սրբում աչքերը։ Ապա մայրը կերակրում է Հովհաննեսին, նրա բարեկամներին և թույլ տալիս նրանց զբոսանքի գնալու։

Դուրս վազելով փողոց, տղաները սլացան դեպի ծով։ Մեկը մյուսին հասնելով վազեցին հեռու և հայտնվեցին քաղաքից դուրս ծովափին ընկած նախկին քաղաքագլուխ Բրոնևսկու այգու մոտ։

Փոքրիկները մի ակնթարթում հանվեցին։ Հնչուն ծիծաղով և աղմուկով նրանք նետվեցին ջուրը և սկսեցին մեկը մյուսի վրա ջուր ցանել։

Այդպես երկար կշարունակվեր երեխաների աղմուկը ջրում, եթե հանկարծ չլսվեր բարձր և հրամայական մի ձայն.

— Դե՛, վերջ տվեք չարությանը։

Բոլոր երեխաները միանգամից շուռ եկան գետի ափը և տեսան անծանոթին։ Նա երիտասարդ էր, նիհար, գանգրահեր, մեծ երկնագույն աչքերով։ Տղաներն սկսեցին դուրս գալ ջրից, երկչոտ նայելով անծանոթ մարդուն։ Նա, ըստ երևույթին, խղճահարվեց, սկսեց իր գրպաններից հանել խոշոր խնձորներ և ճարպկորեն նետել տղաների կողմը։ Վերջիններս միանգամից սիրտ առան և շրջապատեցին նրան։ Անծանոթ մարդը հանկարծ քրքջաց, սկսեց քաշքշել տղաներին, խուտուտ տալ։ Երեխաները ճղճղացին ու պաշտպանվելով, հարձակվեցին այդ տարօրինակ մարդու վրա, գցեցին նրան ավազին և սկսեցին անխղճորեն խուտուտ տալ նրան։ Նա բոլորից բարձր ճչալով, ետ գնաց և ուզում էր դուրս պրծնել իրեն շրջապատած մանկական մարմինների կծիկի միջից։ Վերջապես բոլորը հոգնեցին։ Անծանոթը արագ հանվեց և հրաման տվեց.

— Լողանալ, բոլորը, արագ։

Նա առաջինը վազեց։ Ջրի մեջ տղաները նորից հարձակվեցին նրա վրա։ Նա բարձր քրքջաց՝ փայլեցնելով սպիտակ ատամները, բայց չհանձնվեց։ Հանկարծ նա բռնեց Հովհաննեսին և բարձրացրեց նրան իր գլխից վերև։

— Հը՜, խեղդե՞մ քեզ, չարաճճի։

Հովհաննեսն իսկի չվախեցավ, բայց ընկերները գոչեցին.

— Ո՛չ, ո՛չ, նրան չի կարելի խեղդել։ Այսօր նրա ծննդյան օրն է։

— Ծննդյան օ՞րը,— հարցրեց անծանոթը և տղային սեղմեց իր կրծքին։— Քեզ ինչպե՞ս են կոչում։

— Հովհաննես,— շշնջաց փոքրիկը։ Նա իրեն լավ էր զգում այդ մարդու կրծքին։

— Իսկ ինձ կոչում են Ալեքսանդր Պուշկին. հիշո՞ւմ ես։

Հովհաննեսը նայում էր անծանոթի աչքերին և կրկնում.

— Պո՜ւշկին...

Բայց այդ պահին ամեն ինչ ծածկվում է ինչ-որ շղարշով։ Նա զգում է, թե ինչպես ընկնում է անդունդը։ Հովհաննեսն ուզում է գոռալ, բայց չի կարողանում և արթնանում է։

Այվազովսկու վրա խոնարհվել է ակադեմիայի ուսանողների մի ամբողջ խումբ։ Ընկերները բարձրաձայն ծիծաղում են։ Այդ ժամանակ միայն նա նկատում է, որ իրեն վերմակի և բարձի հետ միասին մահճակալից քաշել գցել են հատակին։ Ամենից բարձր ծիծաղում է նրա բարեկամը՝ նկարիչ Շտեռնբերգը։

— Ինչի՞ մասին էիր խոսում Պուշկինի հետ,— հարցնում է Շտեռնբերգը։

— Ա՜խ, բարեկամնե՛ր, ինչպիսի՜ երազ տեսա... Թույլ չտվիք մինչև վերջ հիանալ։

— Դուք տեսնո՞ւմ եք երազների այս սիրահարին։ Նա ըստ երևույթին, բոլորովին մոռացել



Պուշկինը ամուր սեղմեց ... նկարչի ձեռքը...

է, որ այսօր բացվում է ակադեմիայի ցուցահանդեսը և ինքը մինչ այդ այնտեղ պետք է լինի, տեսնի, թե որտեղ են կախված իր սեփական նկարները,— եռանդով ասում է Շտեռնբերգը և իսկույն դիմում է ընկերներին.

— Դե՛, սկսենք հագցնել այս ծույլ մայեստրոյին...

***

Ցուցահանդեսը շատ բազմամարդ էր։ Հանկարծ թեթև շշնջյուն լսվեց։ Գեղարվեստների ակադեմիայի տեսուչ Կրուտովը շտապում էր դեպի բաց դռները, որոնց մեջ երևացին Պուշկինը կնոջ հետ։ Բանաստեղծը ողջունում էր բազմաթիվ ծանոթներին։ Կրուտովը կանչված էր, որ Ալեքսանդր Սերգեևիչին և Նատալյա Նիկոլայևնային ցույց տար նկարները։

*Բանաստեղծը երկար կանգ առավ պեյզաժիստ Լերեգևի նկարի առաջ և բարձրաձայն արտահայտեց իր հիացմունքը։ Պուշկինն ուզում էր տեսնել նկարչին։ Կրուտովը գնաց նրան փնտրելու, բայց հարևան դահլիճներից նրան ընդառաջ վազեցին ակադեմիայի աշակերտները և երիտասարդ նկարիչները, որոնց հասել էր Պուշկինի ներկա լինելու լուրը։ Կրուտովը փնտրում էր Լերեգևին, բայց նա չկար։ Ապա նա բռնեց Այվազովսկու ձեռքը և տարավ նրան Պուշկինի մոտ։*

*— Ալեքսա՛նդր Սերգեևիչ, ներկայացնում եմ ձեզ մեր շատ շնորհալի սան Այվազովսկուն, որը ոսկե մեդալ է ստացել և ձեզ այնքան սիրելի Տավրիդայի բնակիչն է։*

*Պուշկինը ամուր սեղմեց երիտասարդ նկարչի ձեռքը և խնդրեց նրան ցույց տալ իր նկարները։ Այվազովսկին ցնցված էր, շփոթված։*

*Հովհաննեսն ընկերների ուղեկցությամբ, սիրելի հյուրերին տարավ իր նկարների մոտ։ Ցուցահանդեսում նա երկու նկար ուներ՝ «Օրանիենբաումյան ծովափի ամպերը» և «Ձկնորսների խումբը Ֆիննական ծոցի ափին»։ Պուշկինը երկար կանգնած էր նկարների առաջ։ Նրա դեմքից աստիճանաբար անցնում էր տխրությունը, որը նկատվում էր վերջին ժամանակներում։*

*— Ապշեցուցի՜չ է,— բացականչեց Պուշկինը,— դուք հարավցի եք և այդպես հոլանդաբարեն տալիս եք հյուսիսի գույները։ Ի դեպ, դուք Ղրիմի ո՞ր քաղաքից եք, սիրելի՛ Այվազովսկի։*

*Իմանալով, որ Այվազովսկին Թեոդոսիայից է, Պուշկինը բուռն թափով գրկեց նրան։ Գրկախառնումը տևեց մի րոպեից էլ պակաս, բայց պատանու սիրտը թպրտում էր։ Նա պարզ հիշում էր իր առավոտյան երազը։ Այվազովսկին նայեց բանաստեղծի աչքերին և ուզում էր նրան ասել ինչ-որ շատ կարևոր և թաքուն բան։ Բայց Պուշկինը հանկարծ խոսեց.*

*— Ա՜խ, ինչքա՜ն երախտապարտ եմ ձեզ, Այվազո՛վսկի։ Դուք իմ մեջ հիշողություններ արթնացրիք իմ պատանության երջանիկ օրերի մասին։ Թեոդոսիայում ես դիտել եմ արևամուտը, իսկ գիշերը, նավի վրա, որը ինձ և Ռաևսկիների ընտանիքը տանում էր Գուրզուֆ, գրել եմ «Հանգավ ցերեկվա լուսատուն» բանաստեղծությունը։*

*Պուշկինը մտքի մեջ ընկավ։ Բոլորը երկյուղածությամբ լսում էին, հուզված այդ անկեղծ վեհությամբ։ Նատալյա Նիկոլայևնան, որ չէր մասնակցում զրույցին, հանկարծ դիպավ Պուշկինի ձեռքին։ Նա ցնցվեց և զննեց չորս կողմը։ Շուրջը կանգնած էին ոչ միայն ակադեմիայի աշակերտները, այլև շատ կողմնակի մարդիկ, որոնք մեծ հետաքրքրությամբ նայում էին բանաստեղծին։ Պուշկինի դեմքը նորից մի անկեղծ խստացավ և նա շտապեց դուրս գալ։ Այվազովսկին և երիտասարդ նկարիչները թանկագին հյուրերին ուղեկցեցին մինչև շքամուտքը։ Հրաժեշտի ժամանակ Պուշկինը սեղմեց Այվազովսկու ձեռքը և ասաց.*

*— Երբ լինեք Թեոդոսիայում, իմ կողմից ողջույն տարեք ծովին. իսկ այնտեղ գուցե հանդիպենք...*

*Պուշկինը նորից նայեց շուրջը, ժպտաց, բայց նրա աչքերը տխուր էլ մնացին։*

*Այվազովսկին երկար կանգնած էր բաց գլխով և նայում էր հեռացող բանաստեղծի կողմը։ Բոլորը վաղուց վերադարձել էին շենքը, միայն Շտերնբերգն էր կանգնած նրա կողքին։*

*— Ինչի՞ց է նրա աչքերում այդ թախիծը,— ցածր ձայնով հարցրեց Այվազովսկին։*

*— Մի՞թե դու ոչինչ չգիտես,— զարմացավ Շտերնբերգը,— ամբողջ Պետերբուրգն այդ մասին է խոսում։ Պուշկինին հալածում են ցարը, ժանդարմական պետ Բենկենդորֆը և ամբողջ անհոգի ազնվականությունը, որը նույնիսկ այստեղ ցուցահանդեսում թույլ չտվեց նրան մեզ հետ մենակ մնալու։*

*Փողոցում ոչ ոք չկար, բայց Շտերնբերգը շուրջը նայեց, թե չի՞ լսում արդյոք որևէ մեկը։ Այվազովսկին ցավելու չափ սեղմեց բռունցքները։ Շտերնբերգը թևանցուկ արեց նրան։*

*— Գնանք,— ասաց նա,— դու կսառչես։ Հավատա, մեծ երջանկություն է վիճակվել քեզ, բարեկամ։ Պուշկինը փաղաքշեց քեզ։ Դա ամբողջ կյանքում պետք է հիշել։*

*Թարգմ. Լ. ԱՍՄԱՐՅԱՆ*



## ԴՐՈՒԺԻՆԱՆԵՐՈՒՄ, ՋՈԿԱՏՆԵՐՈՒՄ, ՕՂԱԿՆԵՐՈՒՄ

# ՀԱՂԹՈՂՆԵՐԸ ԿԳՆԱՆ ՄՈՍԿՎԱ

*Ռ. ԱՐԱԼՅԱՆ*

*Ֆոտո՝ Մ. ՔՈՉԱՐՅԱՆԻ*

Գարունը կյանք է տալիս Փամբակի ձորին: Հենց որ ձյունը հալչում է, ձնծաղիկն իր գլխիկն է հանում, ապա ծառերի մոտ կամ թմբի վրա բացվում է մանուշակը, հետո զառնածաղիկն է տարածում իր լայն, հոտավետ տերևները. էլի այդ բոլորից հետո բացվում է տանձենու բուրումնավետ ծաղիկը:

Սկսվում է Փամբակի № 2 մանկատան սաների ուրախ առօրյան: Ասենք ձմռան բքաշունչ օրերին էլ այս մանկատան աղջիկներն իրենց օրն ուրախ են անցկացնում. բայց գարունն էլ իր բույրն ունի:

Ա՛յ, օրինակ, անցյալ տարի, հենց որ գարունը բացվեց, մանկատան դաստիարակչուհի Սեդա Քոչարյանը աղջիկներին հավաքեց իր շուրջն ու ասաց.

— Այս տարի մենք մասնակցելու ենք Լուսավորության մինիստրության և «Պիոներ կանչ» թերթի հայտարարած «Դպրոցամերձ ուսումնա-փորձնական հողամասում կատարվող լավագույն աշխատանքի համար» կոնկուրսին: Մենք կմասնակցենք այդ կոնկուրսին՝ անպայման առաջնություն շահելու պայմանով: Համաձա՞յն եք, կաշխատե՞ք ամբողջ եռանդով...

— Կաշխատենք...

— Համաձայն ենք...— այս ու այն կողմից ուրախ բացագանչում էին աղջիկները:

Եվ ահա սկսվեցին աշխատանքները: Սեդա Քոչարյանը, մանկատան դիրեկտոր Աղասի Համբարյանը և բնասերների աշխատանքին ակտիվ մասնակցող մի քանի աղջիկ նախ և առաջ պլանավորեցին աշխատանքը: Որոշվեց ցանել և մշակել կարտոֆիլ, կաղամբ, լոբի, վարունգ, պոմիդոր, գազար...

— Ես առաջարկում եմ նաև սեխ ցանել,— ասաց Համբարյանը:

— Սե՞խ,— զարմացավ Արծվիկ Ռաֆյանը:

— Այո՛, սեխ,— նորից շեշտեց դիրեկտորը:

— Բայց, ընկե՛ր Համբարյան, մի՞թե մեզ մոտ սեխ կանի,— փորձեց առարկել Սվետլանա Վարդանյանը:

Քոչարյանը, որ ժպտալով լսում էր նրանց, ուրախ գրկեց Արծվիկին ու Սվետլանային և ասաց.

— Այո՛, այո, սիրելինե՛րս, մեզ մոտ սեխ կանի, այն էլ ինչպիսի՜ սեխ: Ա՛յ, կտեսնեք...

— Դե, վերջապես մեր նպատակն ի՞նչ է,— ուրախ ժպիտը դեմքին ավելացրեց դիրեկտորը,— հաղթել բնությանը, նրանից գիտության ուժով ստանալ այն, ինչ ինքը չի ուզում մեզ տալ: Կաշխատենք ու կհաղթենք:

Հրաշալի՜ այգի ունի Փամբակի երկրորդ մանկատունը: Տանձի ու խնձորի վիթխարի ծառերն արդեն ծածկվել են նուրբ-կարմրավուն ծաղիկներով, իսկ միջնակներում դեռ կապույտին է տալիս ուշ բացված մանուշակը: Իսկ անտա՜ռը, անտա՜ռը... Հենց այգու եզրից էլ սկիզբ է առնում այդ հեքիաթային անտառը: Ահա մի գիժ առվակ խոխոջում է ձորակում, ապա զառիվայրից ուժգին խշշոցով թափվում Դեբեդի մեջ: Քամին էլ չարաճճի աղջկա պես ֆռֆռում է թփերի արանքում, շոյում, գուրգուրում տերևները և տանձենուց մի քանի ծաղկաթերթ պոկելով, թռցնում-տանում է չգիտես թե ուր:

Երբ առավոտը բացվում է և այգում սկսում են աշխատել աղջիկները, ամբողջ ձորը լցվում է զըվարթ աղմուկով, քահերի զնգոցով ու երգով:

Աշխատանքի դուրս գալու հենց առաջին օրը Քոչարյանն աղջիկներին հողամասեր հատկացրեց ու սկսեց հետևել, թե ով ինչպես է աշխատում: Մեկ-մեկ նա մոտենում է իր աղջիկներին ու ասում.

— Թամարա՛, քահն ուղիղ բռնիր, թե չէ ձեռքերդ կցավեցնի:

— Սիլվա՛, մի քիչ ավելի խորը փորիր. չէ՞ որ դու այստեղ գազար ես ցանելու. ի՞նչ է, դու մոռացե՞լ ես, որ գազարը սիրում է փափուկ, խոնավ հող:

Աշխատանքն ուրախ էր անցնում, այնքա՜ն ուրախ ու հաճելի, որ աղջիկները չէին էլ ուզում քահը ձեռքից գցել:

Դեռ ցանքից առաջ, երբ աղջիկներն արդեն

սերմերն էին պատրաստում, Արծվիկն ու Սվետլանան եկան Համբարյանի ու Քոչարյանի մոտ և համարձակորեն ասացին.

— Խնդրում ենք, որ մեր ցանկությունը կատարեք...

— Ի՞նչ է պատահել,— զարմացած հարցրեց դիրեկտորը:

— Մենք որոշել ենք կաղամբն ու պոմիդորը ցանել ոչ սովորական եղանակով, այլ տորֆահումուսային թաղարների մեջ...

Համբարյանը սիրալիր ժպտաց աղջիկներին.

— Այդ մենք էլ ենք մտածել, նույնիսկ արդեն պատրաստի թաղարներ ունենք: Բայց... ես առաջարկում եմ թաղարների մեջ սեխ էլ աճեցնել:

— Ա՜խ, այդ սեխը,— Սվետլանան ուզում էր էլի մի բան ասել, բայց Արծվիկը քաշեց նրա թևը:

— Սեխ էլ կաճեցնենք, միայն մեզ սովորեցրեք, թե թաղարներով ցանքն ինչպես պետք է կատարել:

Դե, երբ ինչպես ասում են, կողմերի միջև համաձայնություն կա, գործն էլ, իհարկե, լավ կգնա:

Այսպես անցան օրեր: Վարն էլ, ցանքն էլ կատարվեց ժամանակին: Առաջին ծիլը տվեց լոբին, հետո գազարը, կարտոֆիլը...

***

Աշունը ոսկի է թափում Փամբակի մանկատան այգու վրա: Տերևները դեղնում են, խշշում, քամու հոսանքից թափվում ցած ու ահա գետնի վրա փռվում է աշնան բոլոր գույներով զարդարված գորգը: Հասուն տանձերն ու խնձորները կախված են ծառերից: Կանաչ թփի տակից ժպտում է բոցի պես ալ-կարմիր պոմիդորը:

Բերքահավաքը նոր ուրախություն ու բերկրանք բերեց աղջիկներին: Զարմանալի առատ բերք ստացվեց: Քոչարյանն ուրախ-ուրախ իր տետրակում արձանագրեց. «Կարտոֆիլ՝ ամեն մի հեկտարից 366 ցենտներ, կաղամբ՝ 562, վարունգ՝ 430 ցենտներ...»: Այ թե բարձր բերք ստացվեց տորֆահումուսային եղանակով կատարված ցանքից: Օրինակ՝ պոմիդորի սովորական ցանքից ստացվեց 275 ցենտներ, իսկ տորֆահումուսային եղանակով՝ 590 ցենտներ: Առատ բերք տվեցին նաև՝ լոբին, գազարը, սոխը, եգիպտացորենը, արևածաղիկը, ցորենը:

Իսկ սեխի՞... Սեխի մասին պետք է առանձին խոսել: Մի օր Համբարյանն իր մոտ կանչեց Սվետլանային ու Արծվիկին և նրանց մեկական չերտ սեխ տվեց:

— Սա հենց ձեր աճեցրած սեխն է, տեսնում եք, ինչ քաղցրն է: Այս մեկը պոկել ենք փորձի համար,— կատակեց դիրեկտորը:

Ահա այսպես մանկատան սաները իրենց դաստիարակների հետ միասին հաղթեցին: Սովորական եղանակով նրանք ամեն մի հեկտարից ստացան 140 ցենտներ, իսկ տորֆահումուսային եղանակով՝ 375 ցենտներ սեխ:

Կարծում եք այս հաղթանակը գաղտնի՞ք մնաց, ոչ: Լուսավորության մինիստրության հանձնաժողովը կոնկուրսում Փամբակի երկրորդ մանկատանը ճանաչեց որպես հաղթող: Մանկատունը պարգևատրվեց:

Մանկատան գերազանցիկ սանուհիներ՝ Արծվիկ Ռաֆյանը, Սվետլանա Վարդանյանը, Լաուրա Թադևոսյանը, Սիլվա Հովհաննիսյանը և Թամարա



Ուսումնա-փորձնական հողամասում

Թորոսյանը կգնան Մոսկվա՝ Համամիութենական Գյուղատնտեսական ցուցահանդեսին:

***

Փամբակի ձորում նորից գարուն է բացվել: Ձյունից ազատվել են անտառն ու այգին, գետը վաղուց փշրել է սառցե կապանքը: Անտառը կանաչ բիկնոց է հագել ու իր հավերժական երգն է երգում: Նորից կյանք է առել մանկատան սքանչելի այգին: Տանձի ու խնձորի ծառերը առատ բերք են խոստանում: Վաղ գարնանն աղջիկները էտել են բոլոր ծառերը, հեռացրել չորուկները, փխրեցրել հողը: Իսկ մարգերն արդեն ձևավորվել են: Այնտեղ աճում են կաղամբ, կարտոֆիլ, լոբի, սեխ... Մի մեծ մարգ հատկացվել է եգիպտացորենին:

Կանցնեն օրեր ու ամիսներ, աղջիկները խնամքով կմշակեն հողամասը և նորից կհաղթեն: Իսկ աշնան մի օր գնացքը հաղթողներին կտանի Մոսկվա:




ՅՈՒ. ՄԱՐՅԱՆ

Նկար՝ Մ. ՔՈՉԱՐՅԱՆԻ

*Այդ օրը Սվետլանա Սարգսյանը կհիշի իր ամբողջ կյանքում։ Ռայոնական կոմիտեում նրան կոմերիտական տոմս հանձնեցին, սեղմեցին ձեռքը, ցանկացան պատվով կրել և սրբությամբ պահպանել Համամիութենական Լենինյան Կոմունիստական Երիտասարդական Միության անդամի բարձր կոչումը։*

*Սվետլանան դուրս եկավ փողոց։ Դժվար էր չխորհել, ապագայի պլաններ չկազմել, չմտածել այն փոփոխությունների մասին, որոնք տեղի էին ունենալու կոմերիտմիության շարքերն ընդունվելուց հետո։ Նրա գլխովն անցնում էին մտքեր՝ կոմերիտմիության պատմությունը փառքով պսակող սխրագործությունների մասին։*

*«Ի՞նչ է սխրագործությունը», ինքն իրեն հարց էր տալիս Սվետլանան և նրա հիշողության մեջ վերակենդանանում էին՝ «Ինչպես էր կոփվում պողպատը», «Երիտասարդ Գվարդիա», «Զոյաորդ բարձունքը», «Պատմվածք Զոյայի և Շուրայի մասին» սիրված գրքերի հերոսները... Բայց չէ՞ որ հիմա պատերազմ չկա, և Սվետլանայի դպրոցական կյանքն ընթանում է հարթ ու խաղաղ...*

*Սվետլանան շատ էր ցանկանում խոսել կոմերիտական գործերի, կոմերիտականի պարտականությունների մասին։ Եվ նա հաջորդ օրը գնաց ավագ ջոկատավար Նոյեմ Խաչիկյանի մոտ։*

*Նոյեմը ուշադրությամբ լսեց Սվետլանային։ Խոսակցության թեման նրա համար նոր չէր։ Երբ Սվետլանան վերջացրեց, Նոյեմը հարց տվեց.*

*— Իսկ ի՞նչ ես կարծում, բանվորը, որը մի հերթափոխում կատարում է երկու և ավելի առաջադրանք, սխրագործությո՞ւն է կատարում, թե ոչ։*

*Սվետլանան լուռ էր։ Նոյեմը նրան չէր էլ շտապեցնում։ Այդպիսի հարցին միանգամից պատասխանել դժվար էր։*

*— Իսկ նորարար կոլտնտեսակա՞նը, որը բերքը հավաքում է միքանի անգամ ավելի շատ, քան իր ընկե՞րը։*

*Ջղայնելով պատասխանի, Նոյեմը մի հարց էլ տվեց.*

*— Իսկ ուսուցի՞չը, որը դաստիարակում է հենց այն պատանիներին, որոնք ռազմաճակատներում չտեսնված սխրագործություններ են կատարում։*

*— Այո,— կամաց պատասխանեց Սվետլանան,— ես միշտ էլ հիացել եմ մեր առաջավոր բանվորների, կոլտնտեսականների, գիտնականների, կոնստրուկտորների անձնվեր աշխատանքով։ Բայց երբեք չեմ մտածել, որ...*

*— Մտածիր,— ընդհատեց նրան Նոյեմը,— մի՛ մոռացիր, որ մեր առօրյա կյանքը լի է հերոսություններով, որ Հայրենիքի և ժողովրդի համար օգտավետ գործ կատարելը պակաս կարևոր չէ, քան սխրագործությունը՝ պատերազմում։ Հիշիր, որ կյանքում միշտ էլ սխրագործության տեղ կա։*

*...Անցավ մի քանի օր։ Դասերից հետո Սվետլանան մոտեցավ Նոյեմ Խաչիկյանին և ասաց.*

*— Ուզում եմ ջոկատավար լինել... Թող դա լինի իմ առաջին կոմերիտական աշխատանքը։*

*Ավագ ջոկատավարը փոքր ինչ ժպտաց.*

*— Լավ,— պատասխանեց նա.— այդ հարցը կքննենք դպրոցի կոմերիտական կազմակերպության կոմիտեում։ Եթե կոմիտեի անդամները հավանություն տան, ապա նոր ուսումնական տարվանից դու կլինես ջոկատավար։*

*Եվ ահա, ութերորդ դասարանի աշակերտուհի կոմերիտական Սվետլանա Սարգսյանը առաջին անգամ մտավ դասարան՝ իր պիոներների մոտ։ Պիոներները հետաքրքրությամբ լի հայացքները հառել էին նրա վրա։*

*— Աղջիկնե՛ր, ձեզանից ո՞վ գիտի, թե ինչպես է պատրաստվում ապակին,— հարցրեց նա։*

*Մի պահ լռություն տիրեց, ապա միանգամից սկսեցին խոսել բոլորը։*

*Ոմանք ապացուցում էին, որ գիտեն, ոմանք հաստատում էին, որ դա հետաքրքիր չէ, մյուսները խնդրում էին պատմել այն մասին, թե ինչպես է պատրաստվում ապակին։ Սվետլանան կանգնել էր՝ ականջները բռնած։*

*— Ձեղավ, չեղավ... մեկ-մեկ խոսեք...*

Երբ աղմուկը մի փոքր դադարեց, Սվետլանան ասաց.

— Ես տեսնում եմ, որ ձեզանից շատերը կուզենային ոչ միայն իմանալ, թե ինչպես են պատրաստում ապակին, այլև տեսնել։ Ուզո՞ւմ եք գնալ էքսկուրսիա՝ ապակու գործարան։

— Ուզում ենք, ուզում...

Այդպես, հենց առաջին օրվանից կապ ստեղծվեց ջոկատավարի և պիոներների միջև։ Սվետլանան հետևելով ավագ ջոկատավարի խորհուրդներին, ավելի շատ հնարավորություն էր տալիս պիոներների նախաձեռնությանը, ունկնդրում նրանց ցանկություններին և աշխատանքը կառուցում այնպես, որ բոլորի համար հետաքրքիր լիներ։ Զարմանալի չէր, որ պիոներները Սվետլանային դիմում էին ամենատարբեր հարցերով ու առաջարկություններով։ «Սպաների հրավիրենք Սովետական Բանակի օրվան նվիրված մեր հավաքույթին», «Գնանք Հովհաննես Թումանյանի տուն-թանգարանը», «Խաղաղությանը նվիրված երգ սովորենք»։ Այսպիսի շատ առաջարկությունների Սվետլանան հավանություն էր տալիս և ցանկանում անպայման իրագործել։

Անցավ հետաքրքիր էքսկուրսիաներով, հավաքույթներով, ցերեկույթներով, ընթերցումներով ու խաղերով լի ուսման տարին։ Հիմա Սվետլանա Սարգսյանը սովորում է իններորդ դասարանում։ Ուսումնական տարվա սկզբին նրան իր մոտ կանչեց Նոյեմ Խաչիկյանը։

— Աղջիկների և տղաների համատեղ ուսուցման անցնելու կապակցությամբ ջոկատավարի աշխատանքն ավելի է դժվարանում։ Բայց կոմերիտական կոմիտեն գոհ է քո աշխատանքից և որոշել է քեզ հանձնել յոթերորդ դասարաններից մեկը։ Չե՞ս վախենում...

— Վախենա՞լ։ Ո՛չ...

Իհարկե, Սվետլանան չի վախենում և նույնիսկ ուրախ է, որ իրեն վստահում են։ Նա ցանկանում է շուտ սկսել աշխատանքը նոր ջոկատում։

Սվետլանան սկսեց նրանից, որ խորհրդակցեց նոր ջոկատի պիոներների հետ, իմացավ, թե նրանք ի՞նչ թեմաներով հավաքույթներ կուզենային անցկացնել։ Շատ բան առաջարկեցին պիոներները։ Եվ բոլորն էլ հետաքրքիր էին։

Յուրաքանչյուր հավաքույթի պատրաստվում էին շատ հետաքրքիր ձևով, դրա համար էլ հավաքույթներն անցնում էին ուրախ։ Պիոներները սիրում էին իրենց հավաքույթներում զրուցել, լսել ընկերուհու կամ ընկերոջ պատմած հետաքրքիր պատմվածքը, տարբեր հարցերի մասին խորհրդակցել ընկերների հետ։ Նրանք դեռ երկար կհիշեն՝ «Ինչպես եմ պատրաստում դասերս», «Ինչպես եմ օգնում մայրիկիս», «Իմ օրվա ռեժիմը» և այլ հավաքույթներ։

Աղջիկներն ու տղաները հատկապես տարվում էին այնպիսի հավաքույթների նախապատրաստումով ու կազմակերպելով, ինչպես օրինակ՝ Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկային նվիրված և «Իմ սիրած զբաղմունքը» թեմայով հավաքույթները։

Չինաստանին նվիրված հավաքույթի կապակցությամբ լույս ընծայվեց պատի թերթի հատուկ համար, պատրաստվեցին ելույթներ Չինաստանի աշխարհագրության, ժողովրդական ռեսպուբլիկայի գոյության հինգերորդ տարեդարձի, սովետա-չինական բարեկամության, Չինաստանի Բանակի մասին, երեխաները սովորեցին ոտանավորներ, երգեր, պարեր։



Սվետլանան իր ջոկատի պիոներների հետ։

«Իմ սիրած զբաղմունքը» թեմայով հավաքույթին նախապատրաստվեցին այլ կերպ։ Որոշվեց, որ յուրաքանչյուրը կպատրաստի այդ հավաքույթի համար էքսպոնատ, որը ցույց կտա, թե ով ինչ է սիրել։ Աշխատանքը սկսվեց։ Պիոներները սղոցում էին, նկարում, գործում... Յուրաքանչյուրը ցանկանում էր ցուցադրել իր կարողությունն ու ունակությունը։ Իսկ որպեսզի ծանոթանան բանվորների աշխատանքին, որոշվեց էքսկուրսիա գնալ «Կանազ» գործարանը։

Սվետլանան սիրում է իր աշխատանքը, շա՜տ է սիրում։ Հենց այդ սերն է, որ օգնում է նրան բազմաբովանդակ դարձնելու ջոկատում անցկացվող միջոցառումները, դա է, որ օգնում է նրան ամեն անգամ մտածել ու գտնել նորը, պիոներների համար հետաքրքիրը, նրանց գրավողը։

Երկու տարի է, ինչ ջոկատավար է Սվետլանան։

*Եվ նա զգացել է, որ այդ աշխատանքը ոչ միայն օգտակար է պիոներներին, այլև շատ բան է տվել իրեն՝ Սվետլանային։*

*Կարելի՞ է ջոկատի պիոներներին ասել՝ լավ սովորեցեք, երբ հենց իր թվանշաններն այնքան էլ լավ չեն. իհարկե, ոչ։ Կարելի՞ է արդյոք պահանջել զգաստություն, քաղաքավարություն, մաքրություն և շատ ուրիշ հատկություններ, երբ ինքդ այդպիսին չես. իհարկե, ոչ։*

*Սվետլանան իր մեջ դաստիարակում է սովետական մարդու լավագույն հատկությունները։ Հենց դրանով էլ նա հեղինակություն, սեր և հարգանք է ձեռք բերել։ Դրա համար էլ ջոկատի պիոներները նրան համարում են ոչ միայն իրենց ջոկատավարը, այլև ավագ ընկերը, լավագույն խորհրդատուն, բարեկամը։*

*Դժվա՞ր է արդյոք ջոկատավար լինելը։ Այդ հարցին Սվետլանան անմիջապես չի պատասխանում։ Մի փոքր մտածելուց հետո նա ասում է.*

*— Այո՛, հեշտ չէ։ Երբեմն նույնիսկ շատ դժվար է լինում։ Բայց հենց այդ դժվարություններն են աշխատանքը հետաքրքիր դարձնում։ Չէ՞ որ, ինչպես ինձ է թվում, ամենամեծ հաճույքն ստանում ես այն ժամանակ, երբ հաջողվում է հաղթահարել որևիցե դժվարություն։ Հենց այդ րոպեներին էլ միշտ կգտնվի մեկը, որը օգնության կգա քեզ։*

*Սվետլանան պատմում է ավագ ջոկատավարի, իր ջոկատի դասղեկ Աշխեն Գրիգորյանի և դպրոցի մյուս մանկավարժների մասին։ Նրանք բոլորը պատրաստ են ցանկացած ժամանակ հասնել օգնության, խորհուրդ տալ, միջամտել դժվար հարցի լուծմանը։*

*Պիոներների բնավորությունները տարբեր են. և չէ՞ որ Սվետլանան մարդկանց հետ աշխատելու այնքան էլ մեծ փորձ չունի։ Ինչպե՞ս անել այս դեպքում։ Այսպիսի հարցերի պատասխանը Սվետլանան հաճախ գտնում է, հիշելով ավագ ջոկատավար Նոյեմ Խաչիկյանին, նրա մոտեցումը պիոներներին, նրա պատմածները ջոկատավարներին՝ սեմինարների ժամանակ։ Ամենամեծ օգնությունը Սվետլանան ստանում է իր ջոկատի դասղեկ Աշխեն Գրիգորյանից։ Նա օգնում է պլանը կազմելիս, խորհուրդ է տալիս, թե ինչպես անել, որ ավելի լավ անցնի հավաքույթը, պատմում է յուրաքանչյուր պիոների բնավորության մասին։*

*Ջոկատավարի աշխատանքը Սվետլանան մինչև հիմա էլ համարում է առաջին կոմերիտական հանձնարարությունը։ Այո, դա առաջին կոմերիտական հանձնարարությունն էր, և Սվետլանան պատվով կատարեց։ Եվ դա պատահական չէ, քանի որ կոմերիտական տոմսն ստանալու օրը Սվետլանան հաստատ խոսք ավեց՝ ամեն մի կոմերիտական հանձնարարություն կատարել պատվով, չխնայելով իր ուժերը։ Առավել ևս, երբ այդ հանձնարարությունը հենց իր սրտովն է։*

## ՀԱՑԱՌԱՏ ԳՅՈՒՂՈՒՄ

Աշակերտները ուրախ աղմուկով մտնում են արհեստանոց:

Սկսվում է պատանի տեխնիկների աշխատանքային աշխույժը: Հաստոցի մոտ աշխատում է Մերուժանը իր փոքրիկ օգնականի՝ Եղիշի հետ: Նրանք գեներատորի համար պատրաստում են պտուտակներ և պնդօղակներ: Կոլյան պատրաստում է գեներատորի կոլեկտորներ, իսկ Օնիկը, որին ընկերները «գլխավոր մեխանիկ» են կոչում՝ խարիսխը:

— Ռաֆի՛կ, սոսինձը բեր,— ընկերոջն է դիմում Կիմը, որը էլեկտրատրակտորի թրթուրներ է պատրաստում:

— Տղանե՛ր, վաղվանից պետք է սկսենք գծանավ պատրաստել,— ասում է ֆիզիկայի դասատուն:— Ժորա՛, դու և Սիլվան կպատրաստեք գծագրերը. Գառնիկը, Նորիկը և Սերյոժան թող աշխատեն փայտային մասի վրա. Օնիկն ու Կոլյան՝ մոտորի և էլեկտրասարքավորման վրա...

Մի քանի օր հետո աշակերտներն իրենց հետ բերում են մետաղալար, մետաղյա զանազան իրեր, փայտ, տախտակ և նոր թափով սկսում են գծանավ պատրաստել:

— Այս մասերը,— մատը գծագրի վրա դնելով, ասում է Ժորան,— պետք է պատրաստենք թղթից, և երբ չափումներից հետո կհամոզվենք, որ ճիշտ են, կպատրաստենք տախտակներից:

Ժորայի ասածներին հավանություն են տալիս ընկերները:

— Եկող շաբաթ մեր գծանավը կլողա գետի ջրերի վրա,— ասում է Գառնիկը:

— Զգույշ չհասնի Վոլգա—Դոն,— կատակում է Սիլվան:

— Եվ կհասնի,— պնդում է Գառնիկը:

— Այդ ինչպե՞ս,— մի փոքր լռելով, շարունակում է Սիլվան:

— Շատ պարզ,— ասում է Նորիկը,— երբ մենք պատրաստենք այնպիսի գծանավ, որ արժանանա պիոներների ու դպրոցականների տեխնիկական ստեղծագործության համամիութենական ցուցահանդեսին, այդ նշանակում է, որ մեր գծանավը կհասնի Վոլգա—Դոն:

— Ճիշտ է, ճիշտ է,— ձայնեցին այս ու այն կողմից

Աշակերտները վերջացնում են օրվա անելիքները և գնան իրենց աշխատանոցից, գնում են տուն: Նրանցից ամեն մեկն ունի իր երազանքը: Վոլոդյան և Օնիկը որոշել են դառնալ էլեկտրոինժեներ, Մերուժանը ցանկանում է ընդունվել գյուղատնտեսական ինստիտուտ և ավարտելուց հետո աշխատել հայրենի գյուղում:

Այսպես է կազմակերպված պատանի տեխնիկների աշխատանքը Նոր-Բայազետի շրջանի Հացառատ գյուղի դպրոցում:

Ա. ՄԱՐՈՒԹՅԱՆ

# ՄԵՂՈՒՆ ԴՊՐՈՑՈՒՄ









*Մեղուն մեղր է տալիս, քաղցր, բուրավետ մեղր. դուք այդ գիտեք։ Թե ինչպե՞ս է փոքրիկ, ոսկեգույն մեղուն այդքան քաղցր մեղր պատրաստում՝ այդ նույնպես գիտեք։ Դուք գիտեք, որ մեղուն խայթում է, երբ որևէ մեկը փորձում է սպառնալ նրա կյանքին։ Ամռանը ձեզանից ոմանք իրենց մաշկի վրա զգացած կլինեն մեղվի սուր խայթոցը։ Բայց Երևանի 67-րդ դպրոցի աշակերտներից շատերն այդ խայթոցն զգացել են ոչ միայն ամռանը, այլև ձմռանը։ Մեղուն, օրինակ, Բորիկ Վարդանյանին այնպես խայթեց, որ տեղը մինչև օրս էլ ցավում է։ Նրա խայթոցներից չխուսափեցին ո՛չ Ազիզյան Շառլը, ո՛չ Նորիկ Գրիգորյանը և ոչ էլ նույնիսկ տասներորդ դասարանցի Մարգարյան Ալբերտը։ Բայց այդ ինչ մեղու է, որ ոչ թե մեկ, այլ բազմաթիվ անգամ է խայթում, որ ոչ թե մի հոգու, այլ շատերին է խայթում և՛ ոչ խայթոցն է կորցնում, և՛ ոչ էլ ինքը մեռնում։*

*Բոլոր դպրոցներում էլ պատի թերթեր կան. դրուժինայի, ջոկատի և այլն։ 67-րդ դպրոցում շատ թերթերի հետ լույս է տեսնում նաև «Մեղու» երգիծական թերթը։ Հիմա դուք անշուշտ հասկացաք, թե ինչու այդ դպրոցի «մեղուն» ձմեռային քուն չի մտնում, ընդհակառակը, նրա գործունեության ամենաեռուն շրջանը ձմեռն է։*

*Ահա լույս է տեսել «Մեղու» թերթի հերթական համարը։ Լուրն անմիջապես տարածվում է ամբողջ դպրոցում։ Դասամիջոցներին աշակերտները խռնվում են երկրորդ հարկի միջանցքում։ Ամենքն էլ ուզում են մոտենալ և անձամբ կարդալ հետաքրքիր համարը։ Ոմանք բարձրաձայն կարդում են ուրիշների համար, իսկ ոմանք էլ տխուր թողնում ու հեռանում են։ Դրանք այն աշակերտներն են, որոնք հենց նոր զգացին մեղվի սուր խայթոցը։*

*Աշակերտներից մեկը բարձրաձայն կարդում է.*

«Հարց.— *Ինչո՞ւ է Ազիզյան Շառլը առաջին դասերից ուշանում։*

Պատասխան.— *Որովհետև գալիս է հեռո՜ւ, հեռո՜ւ, հեռո՜ւ տեղից... դպրոցի դիմացի բակից»։*

*Շառլը, որ առաջ էր խցկվում, քիթը կախեց ու հեռացավ։ Ի՞նչ կարող էր անել։ «Մեղուն» խայթել էր նրա ամենանուրբ տեղը։*

*Ահա հուշելու ցավով՝ տառապող մի աշակերտ նստել և միտք է անում, թե ինչպե՞ս անի, ի՞նչ միջոց գտնի, որ միանգամից հնարավոր լինի մի քանի հոգու հուշել։ Ո՛չ, նա ավելի հեռուն է գնում. նա երազում է մի այնպիսի հնար գտնել, որ կարողանա միաժամանակ հուշել բոլոր դասարանների ու բոլոր դպրոցների աշակերտներին։ Այս թղթակցության մեջ կոնկրետ անուններ չկան, բայց աշակերտներից ամեն մեկն իրենց դասարանի «հուշարարին» է վերագրում գրվածքը։*

*— Մինասի մասին է...*

*— Արամն է...*

*— Չէ՛, սա մեր դասարանի Նուշիկն է...*

*Եվ շարունակում են դատողություններ անել «Մեղվի» թարմ համարի մոտ։*

*«Իքսի» և «Զեթի» մասին եղած թղթակցությունը նույնպես մեծ աշխուժություն է առաջ բերում։ «Իքսի» և «Զեթի» նման աշակերտներ էլ շատ կան։*

*Պատմության դաս է։ Ահա նրանք նստած են ուրախ ու անհոգ։ Համոզված են, որ դասատուն իրենց չի հարցնի՝ թվանշաններ ունեն։ Ահա «Իքսն» ու «Զեթը» ֆիզիկայի դասին։ Նրանք մռայլ են՝ «Ե՞րբ պիտի գնանք տուն»...*

*Եվ մի ակնթարթում տեղի է ունենում «ֆիզիկական փոփոխություն»։ Երկուսն էլ հիվանդ են ձևանում։ Մեկը թևն է կապել, մյուսը՝ կոկորդը։*

*Ահա երեք փոքրիկ նկար։ Առաջինում նկարված է դպրոցական համազգեստով մի համեստ աղջիկ։ Նրա կողքին՝ մազերի տարօրինակ հարդա-*

*բանքով մի ուրիշ աղջիկ. իսկ երրորդ նկարում երփներանգ ու արտառոց հագուստով, մազերի նույնքան արտառոց հարդարանքով մի ուրիշը։*

ՀԵՌՈՒ ՄՆԱՑԵՔ ԱՅՍ ՀԻՎԱՆԴՈՒԹՅՈՒՆՆԵՐԻՑ




ԱԿԱՆՋԻ ՀԻՎԱՆԴՈՒԹՅՈՒՆ



ՔԹԻ ՀԻՎԱՆԴՈՒԹՅՈՒՆ



ԿՈԿՈՐԴԻ ՀԻՎԱՆԴՈՒԹՅՈՒՆ



ԴԵՂԱՏՈՄՍ

«Մեղու» պատի թերթի նկարներից: Նկ. Հ. ԽԱԺԱԿՅԱՆԻ

*Աշակերտները ճանաչում են իրենց դպրոցի իններորդ դասարանի աշակերտուհի Իրա Հայրապետյանին, որ յոթերորդ դասարանից սկսեց հագնըվել այնպես, որ դպրոցականին վայել չէ։*

*Ահա Լյուդվիգ Վարոսյանը, որ հասարակ բաժանում չի կարողանում անել։ Նա 197000-ը բաժանել է տասնչորսի և... այնպիսի արդյունք ստացել, որ արժանացել է «Մեղվի» խայթոցին։*

*Բազմաթիվ են «Մեղու» թերթում լույս տեսած թղթակցությունները ու երգիծական նկարները։ «Մեղվի» խայթոցներին արժանանում են բոլոր նրանք, ովքեր խախտում են աշակերտի վարքի կանոնները, կամ վատ են սովորում։ 67-րդ դպրոցում «Մեղու» երգիծական թերթը շատ է օգնում ուսման և կարգապահության բարձրացման գործին։*

*Իսկ չէ՞ որ այդպիսի թերթ կարող են լույս ընծայվել բոլոր դպրոցներում։ Երեխանե՛ր, ձեզ մոտ էլ երգիծական թերթ լույս ընծայեցեք, մասնակցեք այդ թերթի աշխատանքներին, ինչպես 67-րդ դպրոցում՝ Դավիթ Մանուկյանը, Սուրեն Շարամբեյանը, Ֆելիքս Փափիկյանը, Սուրիկ Թարյանը ու Հրաչիկ Խաժակյանն են մասնակցում և լավ թերթ կունենաք։ Ձեզ կօգնեն ուսուցիչները, ինչպես 67-րդ դպրոցում պատմության դասատու Բագրատ Միրզոյանն է օգնում։ Աշխատեցեք, որ ձեր երգիծական թերթը լավ ու գեղեցիկ նկարազարդված լինի։ Նկարիչներ ձեր դպրոցում կգտնըվեն։ Աշխատեցեք, որ թերթը սիստեմատիկ կերպով լույս տեսնի և ոչ Երևանի Սպանդարյանի անվան դպրոցի երգիծական թերթի նման մեծ ուշացումներով։*

Ս. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

# ԽՈՊԱՆԻ ՀԵՐՈՍՆԵՐԻՆ

Կայարանի կառամատույցում աշխույժ եռուզեռ էր: Այստեղ էին հավաքվել Ռեսպուբլիկայի հարյուրավոր երիտասարդներ: Նրանք եկել էին կատարելու հարազատ պարտիայի առաջադրանքը՝ մեկնել խամ ու խոպան հողերն աշխատելու: Այնտեղ, հողերում աշխատելու և երկրին ավելի շատ հացահատիկ տալու համար հարկավոր են մասնագետներ, իսկ նրանք բոլորն էլ մասնագետներ են՝ տեխնիկներ, գյուղատնտեսներ, տրակտորիստներ, կոմբայնավարներ, կառուցողներ...

Նրանք բոլորն էլ ուրախ էին. ամեն մեկն իր մտքում ծրագիր էր կազմում, թե ինչ պետք է անի այնտեղ:

— Ես մեծ ու գեղեցիկ շենքեր կկառուցեմ,— հպարտությամբ ասում էր մեկնողներից մեկը:

— Ես հազարավոր հեկտարներ կվարեմ,— ասում էր մյուսը:

— Մենք էլ այնտեղ արհեստանոցներ կհիմնենք, տրակտորներ ու կոմբայններ կնորոգենք...

Մեկնողներին ճանապարհ դնելու համար կայարան էին եկել նրանց հարազատները, ընկերներն ու բարեկամները, պիոներները...

Գարնանային արևի տակ փայլող ռելսերի վրա կանգնած էր մի գնացք: Զարդարված վագոնների վրա գրված էր «Երևան—Ջամբուլ»:

Որքան մոտենում էր գնացքի մեկնելու ժամը, մարդիկ այնքան ավելի էին խմբվում գնացողների շուրջը:

Հնչեց զանգը. ուղևորները հարազատներից բաժանվելով շտապեցին վագոնները: Շոգեքարշը սու-

լեց. հատուկ գնացքը, որը վարում էր անվանի մեքենավար Գարեգին Աբաջյանը, փողային նվագախմբի հնչյունների տակ դանդաղորեն հեռացավ կառամատույցից:

— Բարի ճանապարհ ձեզ, հերոսնե՛ր, բարձր պահեք Հայաստանի կոմերիտմիության պատիվը...

Դեռ երկար ժամանակ ուղեկցողները օդի մեջ թափահարում էին թաշկինակները, իսկ վագոնների բաց լուսամուտներից նրանց էր հասնում մեկնողների ուրախ խմբերգը.

Լայնարձակ է հայրենի երկիրն իմ...

Անցան օրեր: Երևանի Պիոներների պալատում մի խումբ երեխաներ զրուցում էին խամ ու խոպան հողերը մեկնած հայրենասերների մասին, այն մասին, թե իրենք՝ պիոներները ինչպիսի նվերներ պետք է պատրաստեն նրանց ուղարկելու համար:

Նրանք թերթերից իմացել էին, որ Իջևանի շրջանի Աչաջուր և Թալինի շրջանի Ոսկեթաս գյուղերի պիոներները խամ ու խոպան հողերում աշխատողների համար նվեր են ուղարկել ռադիոընդունիչներ, պատեֆոններ, գեղարվեստական գրականություն:

Իսկ ինչպիսի՞ նվերներ են ուղարկել Հայաստանի գործարանները, բանվորական կոլեկտիվները, սովետական ամբողջ ժողովուրդը:

— Չէ՞ որ այնտեղ նոր դպրոցներ, ակումբներ, գրադարաններ ու պիոներական տներ են կառուցվել. պետք է օգնել նրանց:

— Ճիշտ է, պետք է օգնել... թեկուզ մի նորակառույց պիոներական ակումբի կամ դպրոցի...

Պիոներների այս խոսակցությունը շուտով տարածվեց ամբողջ պալատում և ինքնագործ խմբակներում ընդգրկված բոլոր երեխաները գործի անցան:

Մի քանի օր հետո նկարչական խմբակի անդամ Տոլիկ Պապանյանը ավարտեց «Առավոտը խոպան հողերում» իր ջրաներկ գործը: Վաղ առավոտ է, ծագող արևի շողերը հրդեհել են խամ ու խոպան հողերի վրա փռված կապույտ երկինքը. տրակտորիստները նախապատրաստում են մեքենաները վարն սկսելու համար: Այդ նկարը պետք է գնա զարդարելու Պավլոդարի մարզի նոր կազմակերպված սովխոզներից մեկի ակումբը:

Հետաքրքրական է նաև Լիպարիտ Եղիազարյանի նկարը: Այստեղ պատկերված է նոր Երևանը. շինարարները բազմահարկ շենքեր են կառուցում: Երևում է Հայաստանի Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի վեհանիստ շենքը:

Խոպանները մեկնողների համար նվերներ են պատրաստում նաև խմբակները: Ձեռագործի խմբակը ասեղնագործել է սեղանի ծածկոց. ռադիոտեխնիկների խմբակը պատրաստել է բարձրախոսներ, դետեկտորային ընդունիչներ, լուսանկարչական խմբակը՝ Երևանի տեսարժան վայրերի,



Պիոներները նվերներ են պատրաստում:

Պիոներների պալատի խմբակների աշխատանքները արտահայտող նկարների ալբոմներ: Բացի դրանցից երեխաները Պավլոդարի մարզի նոր դպրոցների համար իրենց միջոցներով գնել են ռադիո-բարձրախոսներ, մանդոլիններ, գիրաներ, հայերեն և ռուսերեն գրքեր, շախմատ, շաշկի և այլ խաղեր:

Շուտով խոպանի հերոսները կստանան երեխաների սրտագին նվերները:




*ՍՏ. ԿՈՒՐՏԻԿՅԱՆ*

*1920 թվականի մայիսին Ղուկաս Ղուկասյանն ու իր ընկերները կռվի ելան թշնամու դեմ։ Անհավասար մարտում Ղուկասը ծանր վիրավորվեց և Ջախջախչիի սարերից կռվելով հասավ Արգինայի ձորը։*

*Ձորում կար մի ջրաղաց։ Ղուկասյանի ջոկատն այդտեղ ամրացավ և չթողեց, որ թշնամին մոտենա։ Վերքի ցավերը սաստկանում էին, բայց նա անդադար կրակում էր թշնամու վրա, վիրավորում և սպանում նրանցից շատերին։ Սակայն նա հետզհետե ուժասպառ էր լինում։ Ընկերները տեսնում են նրա ծանր վիճակը և ուզում են հեռացնել կռվի դաշտից։*

*— Ընկե՛ր հրամանատար,— ասում է ամենակրտսեր կոմունար Հրայրը,— մենք երեք-չորս հոգով այստեղ կմնանք և կդիմադրենք, մինչև որ ձեզ այս ձորից դուրս բերեն...*

*— Ես ոչ մի տեղ չեմ գնա, ընկերնե՛ր. դեռ կրակելու ուժ ունեմ։ Դուք պետք է շտապ հեռանաք այստեղից,— ասում է Ղուկասյանը։*

*— Ես ձեզ մենակ չեմ թողնի,— հուզված խոսում է Կարոն։*

*— Մենք էլ չենք հեռանա այստեղից,— բացականչում են բոլորը և զորովանքով գրկում երիտասարդ հրամանատարին։*

*Ղուկասյանը մի պահ անխոս նայում է ընկերներին։*

*— Շնորհակալություն, ընկերնե՛ր,— հուզված ասում է նա,— բայց ես դեռ կամ, ես ձեր հրամանատարն եմ, և դուք պարտավոր եք ենթարկվել ինձ։ Հայաստանի բանվորների և գյուղացիների կռիվը թշնամու դեմ նոր է սկսվում. դեռ մեծ մարտեր են լինելու։ Այժմ մեզ համար թանկ է ամեն մի մարտիկի կյանք. ես ձեզ հրամայում եմ անմիջապես հեռանալ այստեղից...*

*Ոչ ոք տեղից չի շարժվում։ Այդ նկատում է հրամանատարը և ձայնը մեղմացնելով, ավելացնում.*

*— Միևնույն է, ես երկար չեմ ապրի...*

*Նա մի պահ լուռ դիտում է զինակիցների վրշտով ու վրեժով լի աչքերը և վճռական ձայնով ավելացնում.*

*— Հաղթանակը մերը կլինի, ընկերնե՛ր... Հայաստանում էլ շուտով կծածանվի կարմիր դրոշը... Հանուն այդ հաղթանակի ես հրամայում եմ անմիջապես հեռանալ այստեղից...*

*Բոլորը հուզված էին վիրավոր հրամանատարի վերջին խոսքերից։ Եվ նրանք գլխիկոր հեռանում են ջրաղացի շրջակայքից։*

*Քիչ հետո թշնամին նորից սկսում է գնդակոծել ջրաղացը։ Ղուկասյանն իր թաքստոցից նկատում է, որ թշնամու մի խումբ զինվորներ մոտենում են։ Բայց նա սպասում է, որ ավելի մոտենան։*

*Եվ ահա նա գործադրում է իր վերջին ուժերը և կրակում է թշնամիների վրա։ Նրանցից երկուսն ընկնում են։*

*Կրակը սաստկանում է։ Թշնամին գալիս է մի քանի ուղղություններով։ Ղուկասյանը լարում է լսողությունը, հաշվում փամփուշտները. ընդամենը տասներկու փամփուշտ է մնացել։*

*Առվի կողմից լսվում են գրոհի բացականչություններ։ Անտանելի ցավերից գալարվելով, Ղուկասյանը ճիգ է անում շրջվել դեպի առուն։ Այդ միջոցին ջրաղացի մոտից նա լսում է պատասխան կրակոցներ։ Լսում է և հուզվում։ Ուրեմն ինքը մենակ չէ... Պարզվեց, որ Հրայրն ու Կարոն մնացել էին ջրաղացի մոտ։*

*Երկար դիմադրությունից հետո, կոմունարներն ընկան հերոսի մահով։ Թշնամին մտավ ջրաղաց։ Ղուկասյանը զոհվեց քսանմեկ տարեկան հասակում։ Նա «Սպարտակ» կազմակերպության հիմնադիրն ու ղեկավարն էր։ Հետագայում այդ կազմակերպությունից սկզբնավորվեց Հայաստանի լենինյան կոմերիտմիությունը...*

***

*Ջոկատավարը լռեց։ Նրա զրույցը հուզել էր պիոներներին։ Նրանք շրջապատեցին Երևանի*

Ղուկաս Ղուկասյանի գրանիտե արձանը, որի պատվանդանին վառվում էին պիոներների դրած ծաղկեփնջերը։ Արձանին մոտեցան նաև փոքրիկ Երազիկն ու նրա մայրիկը, որոնք լսել էին ջոկատավարի պատմածը։

Երեխան թողեց մոր ձեռքը և գնաց դեպի պատվանդանը։ Նա իր ձեռքի միակ ծաղիկը միացրեց պիոներների ծաղկեփնջերին։ Պատվանդանի վրա կանգնած Ղուկասյանը կարծես լսում էր պիոներների ձայնը, տեսնում մայիսյան շողշողուն առավոտը, կապույտ-կապույտ երկինքը և անես դրոշը ձեռքին քայլում դեպի ապագան...

# ՄԱՏԻՏ

ՎԱՆ ԻՆ-ՄԻՆ

*(Պեկին քաղաքի տարրական դպրոցի 2-րդ դասարանի աշակերտ)*

Մատի՛տ, սիրուն իմ մատիտ,
Երբ դպրոցում ուշադիր



Սերտում էի դասերն իմ,
Դարձար դու ինձ մտերիմ:

Հիշո՞ւմ ես դու, ա՛յ մատիտ,
Քանի՜ անգամ մեր պատին
Նկարեցի ծաղիկ, դուռ,
Դեմքեր փոքրիկ ծուռ ու մուռ
Ու ներկեցի ես մի օր
Խաղալիքներն իմ բոլոր.
Ու երբեմն էլ, մատի՛տ, քեզ
Բերանս էի տանում ես:
Հիմա հիշում եմ արդեն
Անցած դեպքերը բոլոր,
Մի պահ չիկնում եմ քո դեմ
Ու ինձ զգում մեղավոր:
Պատմում ես ինձ դու մեկ-մեկ
Չարաճճի օրերն իմ...
Խոսք եմ տալիս լսել քեզ,
Կյանքում լինել միշտ ուշիմ:

*Թարգմ. Հ. ՍԵՎԱՆ*

# ԱՆՆՈՒՇԿԱ

Վ. ԱՐԱՄՅԱՆ

Նկ. Ս. ՍԱՖԱՐՅԱՆԻ

*Արևն իջել էր լեռների հետևը. նրանց ձյունոտ գագաթներին դեռ չէր մարել վերջալույսի ցոլքը։ Երկնքի գմբեթում տեղ-տեղ ոսկեզօծվում էին միայնակ ամպերի ճերմակ քուլաները։ Գիշերն իջնում էր սարգայի վրա։ Լռեց սարգան, լռեց և ավանը։ Ամեն ինչ ընկղմվեց գիշերվա խավարում։ Բայց մեր տան նեղլիկ պատուհանում դեռ լույս էր վառվում։ Տնակը կանգնած էր լեռներից վազող վտակի ափին։ Մի քիչ հեռու օրորվում էր մատղաշ կեչիների մի փոքրիկ պուրակ։ Դեռ չէինք քնել. Խոմենկոն երգում էր, պատանի Օլյանը ձայնակցում։ Քնքուշ մեղեդին համակել էր մեզ։ Երբ երգը վերջացավ, պատանին տխրեց։ Խոմենկոն գրկեց պատանուն և ինչ-որ բան էր ուզում ասել, բայց հանկարծ մի աղեկտուր ճիչ ընդհատեց նրան։ Օլյանը սթափվեց, վերցրեց հրացանն ու դուրս նետվեց տնակից։ Ինչ-որ սև մի բան փախավ խավարում։ Կեչիների պուրակում տնքում էր մեկը։ Վառեցի ձեռքիս լապտերը։ Օլյանը նետվեց առաջ, բայց արդեն ուշ էր...*

*Այդ գիշեր կեչիների պուրակում ծնվել էր մի պախրա։ Եվ հենց այդ պահին ինչ-որ գազան հարձակվել էր փոքրիկի մոր վրա և երբ մենք մոտեցանք, խեղճ կենդանին գլուխը շարժեց, նայեց իր ձագուկին և անշնչացավ։ Օլյանը գրկեց փոքրիկին, տուն բերեց. իսկ մայր պախրային թողեցինք կեչիների պուրակում։*

*Այդ օրվանից պախրան մնաց մեր տնակում։ Մենք շատ սիրեցինք նրան, նա էլ մեզ էր սիրում. բայց ամենից շատ, պախրան սիրում էր Օլյանին։ Աննուշկա, այսպես անվանեցինք փոքրիկ որբուկին։*

*Ամեն առավոտ Օլյանը լծում էր իր շնասահնակը և սլանում եղջերաբուծական սովխոզ։ Այնտեղ նրան եղջերուի թարմ կաթ էին տալիս Աննուշկայի համար։ Երեկոները Օլյանը թավշե կտորով մաքրում էր պախրայի սմբակները, փայլուն ու նուրբ աղվամազը, տաք մորթիներ էր փռում հատակին, և Աննուշկան պառկում էր քնելու։ Այն օրվանից, երբ Աննուշկան հայտնվեց մեր տնակում, աշխատում էինք շատ վերադառնալ տուն։ Պատահում էր, որ Խոմենկոն սկսում էր երգել, մենք էլ ձայնակցում էինք նրան։ Այդպիսի երեկոներին Աննուշկան չէր քնում. նա իր գեղեցիկ դունչը դնում էր Օլյանի մահճակալի եզրին և լսում երգը։*

*Օրեր անցան, անցան նաև շաբաթներ և ամիսներ։ Աննուշկան մեծացավ ու շատ գեղեցկացավ։ Օլյանը նրան բաց էր թողնում կեչիների պուրակը, երբեմն էլ հետը տայգա էր տանում։ Երեկոները, եթե Օլյանը փորձում էր դուրս գալ տնակից, Աննուշկան կանգնում էր դռան առաջ ու մեղմ ձայնով բառաչում։*

*— Չե՛մ դնում, չեմ...,— հանգստացնում էր պախրային Օլյանը և դունչը շոյում։*

*Պատահում էր, որ օրվա տպավորություններից հոգնած պատանին գիշերները անհանգիստ էր քնում, շարժվում էր անկողնում, կամ խոսում էր քնի մեջ. այդպիսի դեպքերում Աննուշկայի քունն էլ չէր տանում։*

*Աննուշկայի մեղմ ու հանգիստ հայացքը, նուրբ, գեղեցիկ իրանը և մեղեդու նման քաղցր ձայնը հրապուրել էր ոչ միայն մեր փոքրիկ ավանի բնակիչներին, այլև «օտար» մարդկանց։ Լինում էին դեպքեր, երբ սահնակներով որսորդներ էին գալիս մեր ավանը՝ հանգստանալու և Աննուշկային տեսնելու համար։ Ամեն մի եկող Աննուշկայի համար նվեր էր բերում՝ կաթ, քաղցրավենիք, կապտագույն քնքուշ մամուռ և ուրիշ համեղ բույսեր ու աղբյուրի զուլալ ջուր։ Երբ լրացավ Աննուշկայի հինգ ամիսը, երեկոյան դեմ մեր ավանը մտավ որսորդական մի նարտ։ Նարտը կանգնեց վտակի ափին։ Ուղևորները նվերներ ավին Աննուշկային, իսկ նրանցից մեկը մի կարմիր ժապավեն կապեց պախրայի պարանոցին։ Այդ ժապավենն ինչքա՜ն էր սազում Աննուշկային... Մի առանձին հմայք ու գեղեցկություն ստացավ կենդանին։*

*— Օլյա՛ն,— դիմեց որսորդներից մեկը,— ի՞նչ կուզես խնդրիր մեզանից, ամեն ինչ կտանք, միայն թե Աննուշկային տուր մեզ։*

*Այս խոսքի վրա Օլյանը մտայլվեց։*

*— Ես ձեզանից այդ չէի սպասում։*

*— Մի՛ բարկանա,— շարունակեց որսորդը։— Լավ կլինի, եթե նա մեծանա սովխոզում. մենք հատուկ խնամք կտանենք, բժիշկները կհետևեն նրա առողջությանը, կզարգանա պախրայի այդ հազվագյուտ տեսակը։ Աննուշկան «Տայգա» սովխոզի զարդն ու հպարտությունը կդառնա։*

*Օրը մթնեց։ Հյուրերը մեկնեցին։ Այդ գիշեր Օլյանը չքնեց, արթուն էր նաև Աննուշկան։ Զգայուն կենդանին մի տեսակ փարվում էր տիրոջը։*

— Ինչ լա՞վն ես,— շշնջում էր հուզված պատանին։

Երբ լույսը բացվեց, Խոմենկոն զգուշությամբ արթնացրեց ինձ։

— Նայի՛ր, Յա՛ն։

Ես շուռ եկա։ Պատանին գրկել էր կենդանու պարանոցը և այդպես էլ քնել։ Քնած էր նաև պախրան։ Ապակիների վրա արդեն երևում էին արևի առաջին շողերը։ Սկսվում էր օրը։ Մեր ուշադրությունը գրավեց մոտեցող եղջերուասահնակը։ Ավան էր ժամանել հարևան սովխոզի պիոներական մի ջոկատ.

— Մենք եկել ենք Օլյանի մոտ,— ասաց ջոկատավարը։

— Երևի Աննուշկային տեսնելու համա՞ր,— հարցրեց Խոմենկոն։

— Օլյանին համոզելու։

— Ա՜, Աննուշկային սովխոզ տանելու համար,— լրացրեց նրա միտքը Խոմենկոն և քմծիծաղ տվեց, որ նշանակում էր՝ «հազիվ թե հաջողվի»։

Երբ Օլյանն արթնացավ ու դուրս եկավ տնակից, ջոկատավարը մոտեցավ նրան.

— Օլյա՛ն, եկել ենք քեզ հետ խոսելու...

— Գիտեմ,— ընդհատեց Օլյանը,— իզուր եք եկել, ինձ համոզելու կարիք չկա, հասկանում եմ...

Ապա պատանին շուռ եկավ և մտավ տնակը։ Ջոկատավարի դեմքը շառագունեց։ Մի պահ բոլորն էլ լուռ էին և զուսպ։ Օլյանը չցանկացավ լսել, նա նույնիսկ չընդունեց հյուրերին։ Պատանիների ինքնասիրությունը խիստ վիրավորված էր։

Տնակի դուռը դանդաղորեն բացվեց։ Շեմքին երևաց Աննուշկան, հետո նաև Օլյանը։ Պատանիները հասկացան, որ իսկապես Օլյանին համոզելու կարիք չկար։ Պախրան դուրս պրծավ ու գամվածի նման մնաց իր տեղում։ Նա տեսավ եղջերուներին, լծաշարքը. նրա գեղեցիկ իրանն սկսեց դողդողալ։

— Ա՛ննուշկա,— մեղմ ձայնով կանչեց Օլյանը։ Կենդանին չլսեց, չիմացավ։ Եվ երբ Օլյանը նորից կրկնեց, պախրան դանդաղությամբ շարժվեց դեպի լծաշարքը։ Դժվար է ասել, թե ինչ էր տեղի ունենում այդ պահին, բայց նրա պարզ աչքերը լցվեցին ու նա քնքուշ բառաչ արձակեց։

***

Այդ օրվանից Աննուշկան դարձավ «Տայգա» սովխոզի պարծանքն ու սիրելին։ Ամեն անգամ, երբ եղջերուների հոտը տուն էր վերադառնում, սովխոզի պիոներները դիմավորում էին պախրային, կերակրում էին նրան հապալասի պտուղներով, աղբյուրի ջուր տալիս նրան։ Օլյանը շաբաթը մեկ անգամ այցելում էր, տեղեկանում էր պախրայի առողջության մասին։ Պախրան բոլոր պատանիների մեջ ճանաչում էր Օլյանին, բայց այլևս



Օլյանը գրկեց փոքրիկին, տուն բերեց...

առաջվա նման չէր սիրում Օլյանին։ Զգացվում էր, որ կամաց-կամաց մոռանում է իր պատանի տիրոջը։

— Օտարանում է,— շշնջում էր Օլյանը,— մոռանում է...

Աշուն էր, ցուրտ, անձրևոտ աշուն։ Ամպերը երկնքից չէին քաշվում։ Երկար թափառելուց և անհաջող որսից հետո տուն էինք վերադառնում։ Խոմենկոն, որ քայլում էր առջևից, հանկարծ կանգ առավ. նա նայում էր, բայց չէր հավատում իր աչքերին։ Մամուռի վրա ընկած էր մի կարմիր ժապավեն։

— Աննուշկայի ժապավենը,— հանկարծ գոչեց Խոմենկոն։

Օլյանը շանթահարվածի նման առաջ նետվեց։ Եվ երբ մենք էլ մոտեցանք, պատանին նետվեց Խոմենկոյի գիրկը և բարձր ձայնով սկսեց ծիծաղել։ Ապա շուռ եկավ և որքան ուժ ուներ սկսեց վազել։ Մենք ոչինչ չհասկացանք։ Հաստաբուն ծառի մոտ մամուռը տրորված էր։ Ի՞նչ էր տեղի ունեցել այս ծառի տակ... Քիչ հետո ծառերի միջից երևացին մեր փոքրիկ ավանի էլեկտրական

լույսերը։ Երբ տուն հասանք, շեմքին երևաց Օլչանը։

— Ես այդպես էլ գիտեի,— հազիվ իրեն զսպելով աղաղակում էր պատանին,— նա ձյան նման ճերմակ է, դունչը սև, ճակատին սև խալ ունի... Այդ օրը հաստաբուն ծառի տակ աշխարհ էր եկել մի նոր պախրա՝ Աննուշկայի հորթուկը։

— Աննուշկան ինձ չճանաչեց,— տրտնջում էր Օլչանը, նա հիմա շատ բարեկամներ ունի. սովխոզի պիոներների ջոկատը խնամում ու փայփայում է նրան։

Մյուս օրը մենք այցելեցինք Աննուշկային։ Նա գտնվում էր փայտաշեն լուսավոր մի տնակում իր հորթի հետ միասին։ Հատակը ծածկված էր երկնագույն մամուռի հաստ շերտով, պատից կախված էր ջերմաչափը։

— Օլչա՛ն, մոտեցի՛ր,— ասաց անասնաբույժը,— տեսնենք կճանաչի՞ քեզ։

Օլչանը մոտեցավ. պախրան նայեց անտարբեր ու օտար հայացքով։ Օլչանը տխրեց։

— Սպասի՛ր, Օլչա՛ն,— ետ քաշեց պատանուն Խամենկոն և մեղմ, շատ մեղմ, հազիվ լսելի ձայնով սկսեց երգել.

Արևն իջնում է,
Երեկոն մոտ է,
Շտապում եմ քեզ մոտ,
Սիրտս կարոտ է...
Ախ, սիրտս կարոտ է...

Աննուշկան ցնցվեց, գլուխը բարձրացրեց, երազկոտ ու թախծոտ հայացքով նայեց մեզ, նայեց իր հորթուկին և կարծես թե տխրեց։

— Ինչպես երևում է, այդ երգը նա շատ է լսել,— խոսեց անասնաբույժը,— պախրաները երաժշտություն շատ են սիրում։

Մենք հեռացանք սովխոզից։ Տրամադրություններս ընկած էր։

— Ի՜նչ խաղաղ է, կարծես ուկրաինական գիշեր լինի,— շշնջաց Խամենկոն և նորից սկսեց երգել։

Այս դեպքից հետո մենք երկար ժամանակ այլևս չայցելեցինք Աննուշկային։

Ձմեռ էր։ Մի անգամ ուշ գիշերին շնասահնակով տուն էինք վերադառնում։ Մեկ էլ հանկարծ շներն ինչ-որ բանից վախեցած մի կողմ նետվեցին, և այդ պահին մեր կողքից սլացավ մի պախրա։ Նրա պարանոցին կարմիր ժապավեն էր կապված։

— Ա՛ննուշկա,— սարսափելի ճիչ արձակեց Օլչանը և սանձեց շներին։

Հազիվ մենք կհասկանայինք, թե ինչ էր տեղի ունենում, երբ քաղցած գայլերի մի ոհմակ կտրեց մեր ուղին։ Այժմ արդեն ամեն ինչ պարզ էր. գայլերի ոհմակը հետապնդում էր Աննուշկային։ Օլչանը մի պահ մտածեց և սահնակն ուղղեց գայլերի հետևից։



...Երևաց Աննուշկան, հետո նաև Օլչանը։

— Ալա՜յ... Ալա՜յ...,— բղավում էր Օլչանը ուղեցույց շանը։ Երբ մենք բացատը մտանք, գայլերը հեռու չէին մեզանից. նրանցից մի քանիսը շրջաններ էին գործում Աննուշկայից առաջ ընկնելու համար։ Մենք սկսեցինք կրակել։

— Ա՛ննուշկա, Ա՛ննուշկա,— բղավում էր Օլչանը,— բայց սարսափած կենդանին ոչինչ չէր լսում։ Գայլերն աշխատում էին նրան կիրճը քշել. նրանք չէին վախենում նույնիսկ մեր կրակոցներից։ Եվ հանկարծ երկու գայլ շրջանցեցին փոքրիկ բլրակն ու դուրս եկան Աննուշկայի դեմ։ Պախրան շփոթվեց, ետ նետվեց։ Այդ պահին լսվեց Խամենկոյի գիլ ու հուժկու երգի ձայնը։ Պախրան կանգնեց տեղում, պտույտներ գործեց ու նետի արագությամբ սլացավ դեպի մեզ։ Խամենկոն ուրախությունից կորցրեց երգի եղանակը և սկսեց ճչալ։

Աննուշկան վազում էր դեպի սովխոզը. մեր սահնակն ուղեկցում էր նրան։

Այդ դեպքից հետո Աննուշկային այլևս տայգա չէին թողնում։

Տարիներ անցան, և բծավոր պախրայի այդ տեսակն աճեց ու զարգացավ «Տալայա» սովխոզում։ Աննուշկան ծերացավ, մոռացավ Օլչանին և այլևս չէր լսում Խամենկոյի քաղցրալուր երգերը։ Նա նայում էր տխուր ու հոգնած հայացքով ու ոչինչ այլևս չէր մտաբերում։




# ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ԽՈՐՔԵՐԻՑ

*Հ. ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ*

*(Պատմական գիտությունների թեկնածու)*

Հայաստանը շատ հարուստ է նախապատմական և պատմական շրջանի հուշարձաններով: Դրա համար էլ որոշ հնագետներ Հայաստանը կոչել են «բաց առաստաղով հնագիտական թանգարան»:

Երևան—Ամբերդ ճանապարհին նույնպես պատմական հուշարձաններ կան: Օրինակ՝ Աշտարակի շրջանի Եղվարդ գյուղը շատ հնուց է հայտնի: Նրա մասին հիշատակվում է հազար երեք հարյուր տարի առաջ: Իսկ գյուղի շրջակայքում եղած բնակության հետքերը երեք հազար տարվա հնություն ունեն: Եղվարդում հայկական հուշարձաններից հայտնի են հազար հինգ հարյուր տարի առաջ կառուցված վանքի ավերակները: Կանգուն է մնացել հազար չորս հարյուր տարի առաջ կառուցված քանդակազարդ պատերով մի հուշարձան ևս: Հրապուրիչ տեսք ունի տասնչորսերորդ դարում գյուղի կենտրոնում կառուցված եռահարկանի երկնասլաց մի հնություն: Սրա առաջին հարկի քիվերը, լուսամուտները զարդարված են հայկական հյուսվածքներով ու բույսերի քանդակներով: Երկրորդ հարկի լուսամուտները կենդանազարդ են: Երրորդ հարկը, գեղեցիկ ու նուրբ քանդակներից բացի, ունի նաև կառուցման տարեթվի վերաբերյալ (1328 թվական) արձանագրություն:

Եղվարդի մոտ է «Արայի լեռը»: Նրա լանջերին նույնպես ճարտարապետական հուշարձաններ կան: Դրանցից մեկը իշխան Գրիգոր Մամիկոնյանի կառուցածն է, մյուսը՝ Վաչե իշխանի:

Եղվարդ—Աշտարակ ճանապարհին անցնում ենք 16—17-րդ դարերում Քասախ գետի վրա կառուցված կամուրջով: Կամուրջի դիմաց, գետի աջ ափին անմատչելի քարափների եզրին հազար հինգ հարյուր տարի առաջ կառուցվել է քարը ծածկով «Միրանավոր» անունը կրող մի եկեղեցի:

Աշտարակի հյուսիս-արևելյան կողմում բարձրանում է հազար երեք հարյուր տարի առաջ կառուցված «Կարմրավոր» անունը կրող հուշարձանը: Նրա գմբեթը կղմինդրածածկ է: Կարմրավորի կղմինդրները միմյանց ամրացված են կրաշաղախով և երկաթյա գամերով: Հուշարձանի պատերը և քիվերը զարդարված են հյուսվածքներով և տերևաձև քանդակներով: Պատերի վրա շատ արձանագրություններ են պահպանվել: Գյուղի հյուսիս-արևելյան մասում 1281 թվականին կառուցվել է մի այլ հուշարձան: Նրա ներսի պատերի վրա պահպանված են յուղաներկով արված որմնանկարները: Որմնանկար կա նաև Օհանավանքի պատերի վրա:

Հին Հայաստանում մեծ տեղ են գրավել ոռոգման ջրանցքների կառուցման աշխատանքները: Օգտվելով մեր նախնիների փորձից, որ հարյուր տարի առաջ Աշտարակի բնակիչները մեծ զրկանքներով պատռել են ժայռերը, և վեց-յոթ կիլոմետր հեռավորությունից, Քասախի խոր ձորից ջուր են բարձրացրել ու ոռոգել իրենց այգիները: Աշտարակի միջով անցնող այս ջրանցքը օգտագործվում է նաև այժմ:

Աշտարակի շրջանում կան մեծ թվով պատմական հուշարձաններ: Նրանք Ամբերդ տանող ճանապարհից դուրս են գտնվում: 1661 թվականին Մուղնի գյուղում կառուցված հնություն սեղանի պատերի վրա պահպանված են բարձր արվեստով արված որմնանկարները:

Կարբի գյուղը պատմության մեջ հայտնի է շատ վաղուց, բայց առևտրական կենտրոն դարձավ տասնյոթերորդ դարից: Այստեղից տարբերկրյա վաճառականները տանում էին հայկական մետաքս, գործվածքեղեն: Կարբիում մինչև այսօր էլ պահպանվում է 1691 թվականին կառուցված ճարտարապետական մի գեղեցիկ կոթող: Փարբի գյուղի հուշարձաններից ամենաարժեքավորը՝ հինգերորդ դարում խոր ձորի եզրին կառուցված վանքն է: Այն շրջապատված է հաստ ու ցածր պարսպով: Միջնադարում պարսպապատ ամրոցը, կամ եկեղեցին թշնամիներից պաշտպանվելու հուսալի միջոցներ էին համարվում: Փարբիում է ծնվել հինգերորդ դարի պատմագիր Ղազար Փարբեցին:

Օհանավանք գյուղում 573 թվականին Աշոտ Դվինեցու ժամանակ վերակառուցվել է քարածածկ վանքը, որը 1217 թվականին նորից վերակառուցում և ընդարձակում է Վաչե իշխանը: Իսկ նրա որդին՝ Քուրդի իշխանը 1250 թվականին



*Ամբերդ ամրոցի ավերակները:*

կառուցում է գավիթը: Պահպանված է տասներկու սյուների վրա կանգնած գեղեցիկ գմբեթը: Այս հնությունն արտաքուստ քառանկյունի, իսկ ներսից խաչաձև տեսք ունի: Մուտքի աջ ու ձախ կողմերում պատի մեջ դրված են նուրբ փորագրված երկու խաչարձան, պատերը զարդարված են փորագրություններով: Պատերի արձանագրություններից մեկում ասված է,

որ Ամբերդ ամրոցը, որպես կալվածք հանձնված է Օհանավանքին:

Աշտարակի շրջանում կան նաև կիկլոպյան ամրոցներ: Սրանցից մեկի ավերակները գտնվում են Ուշի գյուղի մոտ: Այս ամրոցները 3200—3500 տարի առաջ կառուցել են Հայաստանի նախարնիկները: Սրանց պատերի քարերը անելի մեծության հետևանքով ստացել են կիկլոպյան անունը: Այս նույն գյուղում կա նաև հինգերորդ դարին վերաբերող հուշարձան:

Բյուրական գյուղի կենտրոնում, փոքր բարձրության վրա հազար տարի առաջ կառուցվել է քառանկյունի մի մեծ հուշարձան: Սա ունի քանդակազարդ խոյակներ, ներսից և դրսից՝ բազմաթիվ արձանագրություններ: Հուշարձանը կանգուն է և լավ պահպանված:

Միջնադարյան ֆեոդալական քաղաք Ամբերդը Բյուրականից յոթ կիլոմետր դեպի արևմուտք է ընկած: Կառուցված է երկու գետակների արանքում գտնվող եռվանդաձև նկուտի վրա: Ամրոցը եղել է այնքան մեծ, որ այժմ քաղաքի ավերակների տպավորություն է թողնում: Ամբերդը երեք կողմերից պաշտպանված է անդնդախոր ձորերով և ուղղաձիգ բարձր քարափներով: Մնացած կողմերից պաշտպանության համար կառուցվել են հաստ ու բարձր պարիսպներ: Ամրոցի հյուսիս-արևմտյան մասում գտնվում են ֆեոդալների չորս հարկանի դղյակի ավերակները: Ամրոցը իններորդ դարից սկսած պատկանել է Բագրատունիներին, իսկ ավելի ուշ՝ Զաքարյաններին:

Գագիկ առաջին թագավորը Ամբերդ ամրոցը կտակեց իր հաջորդ Հովհաննես Սմբատին:

«Այս տանից,— ասում է պատմիչ Մաթևոս Ուռհայեցին,— դուրս էր գալիս ութ հարյուր զորան, իսկ յուրաքանչյուր զորանին լծված էր վեց եզ»:

Ամրոցի ներսում կանգուն է մնացել տասնմեկերորդ դարին պատկանող գեղեցիկ շինությունը: Դղյակի մոտ բացված է գաղտնի անցք, որի մի ծայրը հասնում է ձորը՝ գետափին: Ստորերկրյա այս անցքը փորված է վտանգի դեպքում ամրոցի բնակչությանը ջուր մատակարարելու նպատակով, ինչպես այդ արվում էր նաև այլ ամրոցներում ու քաղաքներում:

Ամբերդից Երևան վերադառնալու ժամանակ, անհրաժեշտ է տեսնել Օշական գյուղի հուշարձանները, որոնցից մի մասը վերաբերում են հնագույն շրջանին:

Ամենաուշագրավ հուշարձանն Օշականում հայերեն գրերի հարինող Մեսրոպ Մաշտոցի գերեզմանն է:

## ՓՈՔՐԵՐԻ ՀԱՄԱՐ

## ԳԱԶԱՆԸ

ՅԱ. ՏԱՅՅ



*Մաշան խորանարդիկներ ունի: Խորանարդիկների վրա նկարներ կան: Իրար կողքի որ դնում է, տարբեր կենդանիներ են ստացվում: Մաշան այդպես դրեց և ստացվեց առյուծ, հետո՝ ուղտ, հետո՝ խոզ, հետո՝ կատու:*

*Վազեց եկավ Միշան և քանդեց ամբողջ կատուն: Մաշան լաց եղավ:*

*— Լաց մի լինի, Մա՛շա,— ասաց Միշան,— ես քեզ համար մի ուրիշ կենդանի կսարքեմ:*

*Եվ սկսեց սարքել: Խորանարդիկներն իրար կողքի դրեց: Եվ ստացվեց...*

*Գլուխը այծի է, ոտքերն առյուծի են, պոչը՝ խոզի, մեջքը՝ ուղտի:*

*Մաշան ծիծաղեց:*

*Այ, թե ծիծաղելի գազան ստացվե՜ց...*

# Գ Ն Ա Ց Ք

*ՎԻԿՏՈՐ ՎԱՐԴԱՆՅԱՆ*

Թողած ավտո, ձի ու գնդակ
Հավաքվեցինք մի ծառի տակ:
— Երեխանե՛ր, Գագի՛կ, Էմմա՛,
Եկեք գնացք խաղանք հիմա:
— Ես կդառնամ մեքենավար:
— Ես կդառնամ սլաքավար:
— Իսկ դո՞ւ, Պայծա՛ռ:
— Ես կդառնամ տոմսավաճառ:
— Կայարանի պետ էլ, եկեք,
Վաղարշակին նշանակենք:
— Ես՝ շոգեքարշ, ասաց Արտոն...
Մնացածն էլ դարձան վագոն:
Երբ Զավենը զանգը տվեց,
Մեր գնացքը առաջ շարժվեց:
— Տո՜ւ, տո՜ւ, տո՜ւ, տո՜ւ...
Չիկ-չա՛կ, չիկ-չա՛կ,
Փախիր, Լուսի՛կ, փախիր, Արտա՛կ.
Հանկարծ չընկնեք գնացքի տակ:
Մի քիչ հետո լսվեց որոտ.
Վերից տեղաց անձրևը հորդ.



Գնացքի հետ անմիջապես՝
Փախանք մտանք մանկապարտեզ...

# ՎԱՉԻԿԻ ԾԱՌԸ

*Պ. ԽԱՉԱՏՐՅԱՆ*

*Նկ. Հ. ՇԱՎԱՐՇԻ*



Սարյակն արդեն բույն էր դրել,
Ու գետակն էր ժիր աղմկում,
Երբ Վաչիկը ուրախ-ուրախ
Մի ծառ տնկեց իրենց բակում:
Թեպետ ծառը ջրում էր նա,
Հսկում, որ մարդ չմոտենա,
Բայց ինքը միշտ գնում-գալիս
Ու իր ծառին ձեռք էր տալիս,
Նույնիսկ բռնում քաշում էր վեր,
Տեսնի՝ ծառը ոնց է կպել...
Դե՛, գարուն էր, անուշ օրեր,
Ծառեր, թփեր հագան շորեր,
Բայց Վաչիկի ծառը միշտ չոր,
Հենց այնպես էլ մնաց տկլոր:
— Այս ի՞նչ բան է,— ապշեց տղան:
Ծառը տխուր ասաց նրան.
— Դու թողեցի՞ր, որ ես անեմ,
Արմատ գցեմ ու կանաչեմ...



# ԻՆՉՊԵՍ ՍՈՎՈՐԵՑԻՆ ՃԻՇՏ ԳՐԵԼ



Վ. ՔՈՍՅԱՆ

(Ֆիլոլոգիական գիտությունների թեկնածու)

Գագիկը մի ժամանակ ետ էր մնում հայոց լեզվի գրավորից։ Նա կարծում էր, թե ճիշտ գրելու համար կան ինչ-որ առանձին գաղտնիքներ, որոնք իրեն հայտնի չեն։ Այդ պատճառով էլ նա մի օր դիմեց ավագ եղբորը՝ Հակոբին։

— Ինչպե՞ս ես սովորել ճիշտ գրել,— ասաց Գագիկը,— ինձ էլ ասա գաղտնիքը։

— Գաղտնի՞քը, սաեմ,— ծիծաղելով պատասխանեց Հակոբը,— շատ աշխատիր՝ դու էլ կսովորես ճիշտ գրել։

— Ես միշտ էլ կարդում եմ ուղղագրության կանոնները, մի քանիսն էլ անգիր գիտեմ, բայց դարձյալ սխալներով եմ գրում։

— Որեմն [sic: Ուրեմն] դու ուղղագրական կանոնները սովորում ես անգիր, բայց կիրառել չես կարողանում։ Ամենից առաջ դու պետք է վերացնես բանավոր խոսքիդ մեջ եղած սխալները, որովհետև դրանք բանավոր խոսքից անցնում են գրավորին։ Եթե դու միայն, զրպարտել, պիոներ, կիրառել, կոնգրես, հարյուր բառերն արտասանում ես՝ միյայն, զպարտել, պիոնեռ, կիռառել, կոնգռես, հայրուր, ապա գրելիս էլ սխալ կկատարես։ Նշանակում է, պետք է խոսել ճիշտ, մաքուր գրական լեզվով։

Սակայն միայն դա բավական չէ։ Շատ բառերի արտասանությունը տարբերվում է գրությունից, օրինակ՝ ախպյուր (աղբյուր), բարցր (բարձր), երփ (երբ), փորց (փորձ), ախչիկ (աղջիկ) և այլն։ Ուրեմն պետք է իմանալ ոչ միայն դրանց ճիշտ արտասանությունը, այլև ճիշտ գրությունը։

— Ամենից շատ սխալներ կատարում եմ հենց այդպիսի բառերում,— հուսահատությամբ վրա բերեց Գագիկը։

— Այդպիսի սխալները վերացնելու միջոցներ էլ կան,— ասաց Հակոբը։

Դպրոցում սովորած ուղղագրական կանոնները ամեն վայրկյան պետք է ստուգել գեղարվեստական գրքերի, ամսագրերի և լրագրերի ընթերցանության ժամանակ։ Կարդալիս հետևիր քեզ անծանոթ բառերի ուղղագրությանը, պահիր բառատետր և այնտեղ գրիր այդ բառերը, ինչպես ես եմ անում։ Հետագայում այդ բառերը գործածիր խոսելիս կամ շարադրություն գրելիս։

Ավագ եղբոր խորհուրդները շատ օգնեցին Գագիկին։ Որոշ ժամանակ անց, Հակոբը ստուգեց Գագիկի կատարած աշխատանքը և ուրախությամբ ասաց, որ նա պահում է բառատետր, որտեղ գրված են հարյուրից ավելի բառեր, իսկ հայոց լեզվի գրավորներում պակասել է սխալների թիվը։

Սակայն Հակոբը նկատեց, որ խնամքով և ճիշտ են գրված միայն Գագիկի հայոց լեզվի գրավորները։

— Ինչո՞ւ մյուս առարկաներից տված աշխատանքներում ուղղագրության վրա ուշադրություն չես դարձնում,— ասաց Հակոբը։

Գագիկը մի պահ վարանեց, ապա պատասխանեց.

— Չէ՞ որ այդ սխալների համար «2» չեն նշանակում։

Հակոբը ծիծաղեց ու ասաց.

— Ահա թե ի՛նչ, քո կարծիքով ճիշտ գրելը միայն գնահատական ստանալու համա՞ր է։ Սխալվում ես. յուրաքանչյուր մարդ պետք է գրագետ լինի, անսխալ գրի։ Ինչ էլ որ գրելու լինես, շարադրություն, թե նամակ, թվաբանական խնդիր, թե այլ բան, պետք է ձգտես անսխալ գրել, ուղղագրական կանոնները կիրառել բոլոր դեպքերում։ Այլ կերպ ուղղագրություն չես սովորի։

— Ինչո՞ւ չես օգտվում ուղղագրական բառարանից,— մի օր ասաց Հակոբը,— չէ՞ որ այնտեղ կան համարյա բոլոր բառերը։

— Շատ ժամանակ է կորչում որևէ բառ գտնելու համար,— արդարացավ Գագիկը։

— Ուրեմն որևէ բառ գտնելու վրա ծախսած ժամանակը կորա՞ծ է։ Չէ՞ որ դու թերթում ես բառարանը և մինչև քո ցանկացած բառը գտնելը կարդում ես ուրիշ բառեր։ Մի՞թե դա օգտակար չէ։ Դրանով անընդհատ կրկնում ես իմացածդ և ամրապնդում։

Հայոց լեզվի ուսուցիչ Հրայր Դավթյանը նկատել էր Գագիկի մոտ կատարված փոփոխությունը և ուրախությամբ խորհուրդներ էր տալիս ուղղագրական սխալները վերացնելու։

Գագիկն այնքան առաջադիմեց, որ մյուս տարի դարձավ պատի թերթի խմբկոլի անդամ։ Այս անգամ արդեն ինքն էր ուղղում ուրիշների սխալները։

Հաճախ նա խմբկոլի մյուս անդամների հետ վեճի էր բռնվում որևէ բառի ուղղագրության առթիվ։ Վեճը հարթվում էր բառարանի օգնությամբ կամ ուսուցիչների միջամտությամբ։

Մի անգամ նրանք վիճում էին՝ օրական գրել, թե՝ օրեկան: Վահանը պնդում էր, որ պետք է գրել օրեկան, քանի որ կա տարեկան: Գագիկը բացեց բառարանը, սակայն այդ բառը չկար։ Օգնության հասավ ուսուցիչ Դավթյանը։

— Ապա վերլուծեք այդ բառը ըստ կազմության։

— Օրական բառը կազմված է օր արմատից և ական ածանցից։

— Ուրեմն պետք է գրել օրական,— ասաց դասատուն,— իսկ տարեկան բառը կազմված է տարի արմատից, ական ածանցից։ Արմատի ի ձայնավորը միանալով ածանցի ա-ի հետ տալիս է ե (տարի+ական=տարեկան)։

Բարդ և ածանցավոր բառերի ուղղագրությունն ստուգելու համար պետք է դրանք վերլուծել ըստ կազմության։ Օրինակ՝ անընդգրկելի, անընթրիք, վերընթաց բառերի մեջ ը-ն գրվում է, իսկ անսկզբունք, վերսկսել բառերի մեջ՝ ոչ, որովհետև առաջիններում երկրորդ բաղադրիչը գրվում է ը-ով՝ ընդգրկել, ընթրիք, ընթացք, իսկ երկրորդներում ոչ՝ սկզբունք, սկսել։



# ՉԱՓԵՐԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԻՑ

Գ. ԱՎԱԳՅԱՆ

*Աշխարհում ամեն ինչ ունի իր պատմությունը։ Իրենց հետաքրքիր պատմությունն ունեն նաև չափերը։ Մարդը շատ վաղ ժամանակներից սկսած հեռավորություն, տարածություն, ծավալ, ծանրություն, ջերմություն չափելու կարիք է զգացել։ Այդ կարիքը ստիպել է նրան չափի համար որևէ պայմանական միավոր ընդունել։ Սակայն քանի որ մարդիկ իրար հետ քիչ շփում ունեին, դրա համար էլ տարբեր էր նրանց չափի ձևերը։ Այդ տարբերությունը չափի մի քանի ձևերում մինչև հիմա էլ պահպանվում է։ Տարբերություն գոյություն ունի մեր և անգլիական ու ամերիկյան ջերմաչափերի միջև։*

*Ամենավաղ շրջանում մարդը որպես երկարության չափ օգտագործել է իր մարմնի տարբեր մասերը՝ թիզը, ձեռքի ափը, մատը, քայլը և այլն։*

*Քանի որ տարբեր է մարդկանց հասակը, ուրեմն տարբեր կլինեն նաև նրանց «մարմնային չափերը»։ Դրա համար էլ մարդիկասում են. «ուրիշին քո չափով մի չափիր»։*

*Իսպանիայում որպես երկարության մեծ չափ ընդունված էր սիգարը. այդ նշանակում էր մի սիգար ծխելու ընթացքում անցած տարածությունը։ Իսկ Ճապոնիայում ընդունված էր ձիու «շմուշկի երկարություն», այսինքն այն ճանապարհը, որն անցնելիս ձին կմաշի իր պայտերին փոխարինող շմուշկները։ Սիբիրում երկարության չափ էր եզը։ Երկար տարածություն չափելու համար եզը կանգնեցնում էին այնքան հեռու, որ հազիվ երևային նրա զույգ պոզերը։ Դա համարվում էր մեկ «եզ» երկարություն։ Բայց չափի այդ ձևերը ճիշտ չէին։*

*Անցան դարեր։ Ավելի ու ավելի հեռավոր ժողովուրդներ սկսեցին հաճախակի շփվել իրար հետ։ Նրանք առևտուր էին անում, բայց միատեսակ չափ չունենալը դժվարացնում էր նրանց աշխատանքը։ Իսկ խորամանկ և խարդախ վաճառականները, օգտվելով դրանից, խաբում ու թալանում էին ժողովրդին։ Վաճառականները սովորաբար իրենց մոտ ունենում էին երկու չափ. մեկը մեծ, մյուսը՝ փոքր, մեծով առնում էին, փոքրով՝ վաճառում։*

*Հաստատուն չափ ունենալու կարիքն ստիպեց մարդկանց հավաքվել և բոլորի համար մի ընդհանուր չափի միավոր ընդունել։ Այդ նպատակով 1799 թվականի մայիսի 25-ին հավաքված միջազգային կոնգրեսն ընդունեց մետրը որպես հաստատուն չափ։ Մետրի համար երկարություն վերցվեց երկրագնդի հասարակածի 1 : 40,000,000 մասը։ Այդ նույն թվականին ընդունվեց նաև ծանրության հաստատուն չափը՝ կիլոգրամը։*

*Գործածվող չափերը փոփոխության են ենթարկվում։ Դրա համար էլ, ինչպես մետրի, այնպես էլ կիլոգրամի էտալոն (իսկական չափը) գոյություն ունի Փարիզի Բրետոյյան պավիլիոնում։*

*Հետաքրքրական է մակերեսի չափի առաջացման պատմությունը։ Երբ մարդիկ սկսեցին հողագործությամբ զբաղվել, նրանց պետք եկավ որևէ մի չափ՝ հողը իրար մեջ բաժանելու համար։ Սկզբում մակերեսային չափ էին անվանում «լուծը»։ Այդ նշանակում էր այնպիսի մի տարածություն, որը կարելի էր վարել մի զույգ անասունով մեկ օրվա ընթացքում։ Ավելի վաղ շրջանում տարածության չափ էին համարում «օրը»։ Այդ այն տարածությունն էր, որ մարդ կարող է շրջանցել մեկ օրվա ընթացքում։ Այս կապակցությամբ Լ. Ն. Տոլստոյը ունի մի հետաքրքիր հեքիաթ՝ «Շատ հող է պետք մարդուն» վերնագրով։ Այդ հեքիաթում նա պատմում է, թե ինչպես բաշկիրները հարուստ Պախոմին հող են վաճառում «օրը» հազար ռուբլով։ Իսկ անկուշտ և ագահ Պախոմը մի օրում մեծ տարածություն ընդգրկելու համար այնքան է վազում, որ օրվա վերջում ընկնում է անշնչացած։*

*Հետագայում մարդիկ անընդհատ կատարելագործել են մակերեսի չափը։ Ներկայումս տարածությունը չափում են քառակուսի մետրով, կիլոմետրով կամ հեկտարով, արով։*

*Բոլոր լեզուներով հասկանալի լինելու համար, ընդունված են չափերի նույն անունները։ Դրանք կազմված են հունական սկզբնատառերից՝ «դեկա»—տասը, «հեկտո»—հարյուր, «կիլո»—հազար և այլն։ Իսկ փոքր չափերի (մետրի տասնորդական մասերի) անվանումները կազմված են լատինական սկզբնատառերից՝ «դեցի»—տասը, «սանտի»—հարյուր, «միլի»— հազար։*

# ՀԵՏԱՔՐՔԻՐ ԺԱՄԱՆՑ

## Վ Ի Կ Տ Ո Ր Ի Ն Ա

1. Դոնի կազակներից ո՞վ էր ղեկավարում Ռուսաստանում գյուղացիական ապստամբություններից մեկը:

2. Սովետական կոմպոզիտորներից ո՞վ է գրել սուրսկների ապստամբությանը վերաբերող բալետ և ինչպես է կոչվում այդ բալետը:

3. Ո՞ր երկրում է ճանաչես եկել առաջին պետությունն աշխարհում:

4. Ո՞ր հնագույն պետության կենտրոնն է գտնվել Երևանի մոտ՝ Կարմիր բլուրում:

5. Որո՞նք են անծիկ աշխարհից մեզ հասած հունական



հռչակավոր դյուցազներգությունները և ո՞վ է նրանց հեղինակը:

6. Ալեքսանդր Նևսկին ո՞ր գետի վրա է ջախջախել շվեդական զավթիչներին և ե՞րբ:

7. Ովքե՞ր էին եկեղեցու խավարամտության դեմ մարտնչող միջնադարյան առաջին երեք հռչակավոր գիտնականները:

8. Ո՞վ կատարեց առաջին շուրջերկրյա ճանապարհորդությունը և ե՞րբ:

9. Ո՞վ է եղել աշխարհում առաջին զինվորական բուժքույրը:

10. Ե՞րբ են հիմնադրվել Վլադիվոստոկ և Խաբարովսկ քաղաքները:

*Կազմեց՝ Ք. ԽԱՉԻԿՅԱՆ*

## ԳՐԵԼ ԱՆՍԽԱԼ

*ՈՒՂՂԱՀԱՅԱՑ— 1. Ընտանի կենդանի, 2. խիստ վրդովվել, բարկանալ, 3. զարգացման ձև, 4. կտորեղենի տեսակ, 6. գազան, 8. կտորեղենի տեսակ, 9. իգական սեռի մարդ,*



*11. մատղաշ անասուն, 12. ջրաման, 13. ճեղքվածք, 14. երկրաչափական մարմին, 18. շատ գրավիչ, հոգու խորքը թափանցող բան, 20. չվարժված, 24. հնչյունի գրավոր արտահայտություն, 25. հրանոթի գնդակ, 28. չար, անօրեն, 30. լաթ, հնոտի, 31. անմաքուր, 32. որևէ բան հսկող, պահպանող, 34. մետաղ, 35. ծնողներից զուրկ երեխա, 36. փչացած, հոտած, 40. օրգանիզմի հանգիստ վիճակ, 42. անխոս, հանգիստ, 47. քանակական թվական, 49. ֆիզիկական կամ հոգեկան կարողություն։*

*ՀՈՐԻԶՈՆԱԿԱՆ— 4. միրգ, 5. որդ, 7. առատ, 8. դեմքի մաս, 10. անձնական դերանուն, 12. քաջ, խիզախ, 25. մահվան լուր, 16. ուժեղ կամք չունեցող, 17. խղճի զգացում, 19. գազանի սուր ատամ, 21. ուժեղ թափով դուրս գալ, 22. որևէ հիմնարկում կամ անձնավորության մոտ դաստիարակված մարդ, 23. ակնածանք, 26. գյուղացիական, 27. բազմազան գույներ ունեցող, 29. ջրի ուժեղ հոսանք, 31. խիտ մազախուռ, 33. կատաղի, խելքը կորցրած, 35. վշտից լաց լինել, 37. հնչյունների ներդաշնակ միացություն, որ արտասանվում է բերանով, 38. ցրտից սառած, 39. թռչուն (մեծ մասամբ ընտանի), 41. քիմիական նյութ, 43. անձնական դերանուն, 44. կենդանիների մաշկից պատրաստած պարկ, որտեղ մեծ մասամբ գինի և պանիր են պահում, 45. ոչ ժամանակին, 46. միրգ, 48. հաց թխելու տեղ։*

*ԾԱՆՈԹՈՒԹՅՈՒՆ — Մի շարք դեպքերում պետք է գտնել հոմանիշ բառեր։*

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը՝ ՆՇՄԱՐՈՒԹԻ*


*Խմբագիր՝* ՏԱԼՅԱՆ Վ.

*Խմբագրական կոլեգիա՝* ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԽԱՉԱՏՐՅԱՆ Հ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Դ., ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՕՀԱՆՅԱՆ Ա.

„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Маркса 21.

*Հասցեն՝ Երևան, Մարքսի փողոց № 21, հեռախոսներ՝ 2-44-83, 2-59-06*

*ՎՖ 10592, Պատվեր 417, Տիրաժ 5000, Տպագրական 2½ մամուլ, Ստորագրված է տպագրության 20/V 1955 թ.*

*ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության Գլխավոր վարչության № 1 տպարան, Երևան, Ալավերդյանի փող. № 65։*



# ՄԵՐ ՕՐԱՑՈՒՅՑԸ



## ՄԱՅԻՍՅԱՆ ԱՊՍՏԱՄԲՈՒԹՅՈՒՆԸ

Երևանի 26 կոմիսարների անվան զբոսայգում կա ծառերով ու ծաղիկներով առանձնացված մի նուշատեղի:

Այստեղ, սև բազալտե շիրմաքարի շուրջը հավաքվում են դպրոցականները և ուշադրությամբ լսում իրենց ուսուցչին:

— 1920 թվականն էր: Ազատարար Կարմիր Բանակը մոտենում էր Հայաստանի սահմանին: Ծավալվում էր Հայաստանի բանվորների, զինվորների և գյուղացիների ռևոլյուցիոն պայքարը, որն արտահայտվեց մայիսմեկյան հուժկու ցույցերով և զինված ապստամբությամբ: Ռևոլյուցիոն



ցույցերն իրենց ծավալով ու թափով առանձնապես ուժեղ էին Երևանում և Ալեքսանդրապոլում (այժմ Լենինական): Ալեքսանդրապոլ քաղաքում և զորամասերում կայացած միտինգներում կրակոտ ճառերով հանդես էին գալիս Սարգիս Մուսայելյանը, Եգոր Սեյանը, Բագրատ Ղարիբջանյանը և այլ կոմունիստներ: Նրանք մերկացնում էին ժողովրդի թշնամիներին և պայքարի կոչ անում սովետական կարգերի հաստատման համար:

Մայիսի տասին Ալեքսանդրապոլում սկսվում է զինված ապստամբություն. իշխանությունն անցնում է բանվորների և զինվորների ձեռքը: Նույն օրը Քյավթառլուի (այժմ Փանիկ) շրջանում ապստամբ գյուղացիները կոմունիստների ղեկավարությամբ գրավում են տեղական իշխանությունը և շրջանը հայտարարում սովետական: Ղարսում ապստամբությունը ղեկավարում էր բոցաշունչ բոլշևիկ Ղուկաս Ղուկասյանը: Ապստամբությունը հաղթում է նաև Սարիղամիշում: Մի քանի օր հետո ապստամբվում են Նոր Բայազետի, Ղազախի, Դիլիջանի, Զանգեզուրի աշխատավորները:

Հայաստանի Ռազմա-ռևոլյուցիոն Կոմիտեն Հայաստանը հռչակում է սովետական:

Սակայն մայիսի տասներեքի լույս տասնչորսի գիշերը դաշնակցական մաուզերիստների բանդան հարձակվում է Ալեքսանդրապոլի վրա, գրավում քաղաքը և ձերբակալում ղեկավար կոմունիստներին:

Ժողովրդի թշնամիները Մայիսյան ապստամբության ղեկավարներին դատապարտում են մահվան: Նրանց ձեռքով գնդակահարվում են անճկուն բոլշևիկներ Ստեփան Ալավերդյանը, Բագրատ Ղարիբջանյանը, Սարգիս Մուսայելյանը...

Մինչև սովետական կարգերի հաստատումը նրանց սպանության և շիրիմների տեղերը հայտնի չէին: Միայն սովետական կարգերի հաստատումից հետո, 1921 թվականի հունիսին նրանց աճյունները բերվեցին և հանդիսավոր թաղվեցին այս այգում:

Այս տարի լրանում է Մայիսյան ապստամբության երեսունհինգ տարին:

## ՖՐԻԴՐԻԽ ՇԻԼԼԵՐ

Ամառային շոգ օրերից մեկն էր: Գերմանական Լայպցիգ քաղաքի թատրոնը լեփ-լեցուն էր հանդիսատեսներով: Բեմադրվում էր «Օրլեանի կույսը» դրաման: Ներկայացումից հետո թատրոնի ընդարձակ հրապարակը լցվեց բազմությամբ: Հանդիսատեսները մեծ հիացմունքով խոսում էին ներկայացման մասին: Երբ թատրոնից դուրս եկավ միջահասակ, գունատ դեմքով մի մարդ, բոլորը վերցրին գլխարկները և հարգանքով ողջունեցին նրան:

Այդ մարդը գերմանական մեծ բանաստեղծ-դրամատուրգ Ֆրիդրիխ Շիլլերն էր:

Յոհանն Քրիստոֆ Ֆրիդրիխ Շիլլերը ծնվել է 1759 թվականին Գերմանիայի Մարբախ քաղաքում, զինվորական բժշկի ընտանիքում:

Տասներկու տարեկան Շիլլերին, հակառակ իր ցանկության, տալիս են ռազմական դպրոց, որտեղ դքսի համար պատրաստում էին հլու հնազանդ ծառայողներ: Այդ ութ տարվա ընթացքում պատանի Շիլլերն իրեն զգում էր ինչպես բանտում: Չնայած դպրոցում տիրող դաժան կարգերին, Շիլլերը գաղտնի ուսումնասիրում է փիլիսոփայական աշխատություններ, կարդում է գեղարվեստական գրականություն: Այդ տարիներին նա սկսում է գրել բանաստեղծություններ, դրամաներ, որոնք կարդում էր ուսանողների հետ շրջանում և արժանանում նրանց գովասանքին:

1781 թվականին լույս է տեսնում «Ավազակները» դրաման, որով Շիլլերի անունը հռչակվում է ամբողջ Գերմանիայում: Իմանալով Շիլլերի ստեղծագործական շնորհքի մասին, դուքսը ցանկանում է նրան դարձնել պալատական բանաստեղծ: Շիլլերը հրաժարվում է այդ «պատվից» և փախուստի դիմում: Այնուհետև սկսվում է նրա թափառական կյանքը:



Շիլլերը գրել է «Խարդավանք և սեր», «Վիլհելմ Տել» և այլ դրամաներ: Շիլլերն իր գործերով քննադատում է Գերմանիայում տիրող ռազմա-ֆեոդալական բռնապետական կարգերը և գովերգում ազատությունը: Նրա գործերը թարգմանված են աշխարհի շատ լեզուներով:

Շիլլերը մեռավ 46 տարեկան հասակում: Այս տարվա մայիսին լրանում է նրա մահվան հարյուրհիսուն տարին:

